# ՀԱՅ ԳԻՒՂԱԿԱՆ ՏՈՒՆԸ

ԳՐԵՑ

ՓԱՐՍԱԴԱՆ ՏԷՐ-ՄՈՎՍԷՍԵԱՆ

55 ՊԱՏԿԵՐՈՎ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1894.

## ԱԶԴ

Աշխատասիրութիւնս գրած է անցեալ տարի Պր. Փարսադան (այժմ՝ Մեսրոպ աբեղայ) Տէր-Մովսէսեան սկզբնաբար ի թերթին *Mittheilungen der Anthropologischen Gesellschaft in Wien, 1892*, էջ 125—172, որ եւ ապա իբր առանձին տետրակ եւ լոյս տեսաւ[1]:

Գործոյս նշանակութեան ու յարգին վրայ Հարկ եղած տեղեկութիւնը տուաւ թէ Տաճկահայոց եւ թէ Ռուսահայոց մամուլը[2]:

Հայերէն թարգմանութիւնս այլեւայլ նկատումներով եղած՝ քանի մը փոքրիկ ու աննշան յապաւումներով հանդերձ

---

[1] Das armenische Bauernhaus. Ein Beitrag zur Culturgeschichte der Armenier von Parsadan Ter-Mowsesjantz, derzeit Professor in Etschmiadzin. Mit 55 Text-Illustrationen. Wien 1892. Im Selbstverlage der Anthropologischen Gesellschaft.

[2] Տես Հայրենիք, 1893, թ. 438: Արձագանք, 1893, թ. 38, 39, եւ այլք:

կրնայ ամբողջական ըսուիլ: — Բնագրին մէջ ի պատշաճաւոր տեղիս զետեղեալ պատկերները մենք առանձինն (թուով՝ վեց) տախտակներու վրայ տպելով՝ յաւելուած ըրինք:

Բնագրին կլիշէները գործածելու դիւրութիւնը սիրայօժարութեամբ մատոյց մեզ Վիեննայի Մարդախօսական ընկերութեան քարտուղարը F. Heger՝ նոյները մեր խնդրանաց համաձայն մեր տրամադրութեան տակ դնելով: — Յատակագծերու կլիշէներն միայն չկրցանք գործածել:





# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ԳԻՒՂԱԿԱՆ ՏՈՒՆԸ

---

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Տր. Ռ. Մէրինկէրի „Studien zur germanischen Volkskunde. Das Bauernhaus und dessen Einrichtung“ հետաքրքրական գրութիւնն[1] եւ ի մանաւորի իւր այս նիւթիս վրայ Վիեննայի Մարդախօսական ընկերութեան մէջ Ապրիլ 29ին 1892 խօսած մէկ ճառը, ուր նախկին հնդեւրոպական տունը՝ այժմեան ծանօթ նիւթերէն եզրակացընելով՝ մեզ ներկայացուց, այնպէս՝ ինչպէս Հէննինկ[2] մեծ ճարտարութեամբ Հոմերոսի բանաստեղծութեանց եւ Վեդայի երգոց ակնարկութիւններն ի մի հաւաքելով՝ այսպիսի նախատան մ'ամենակարեւոր մասերը հաւանականութեան սահմանը բերած հաստուցած էր, զիս շարժեցին հայ գիւղացւոյն տան նկարագրութիւնն ընելու. վասն զի Տր. Ռ. Մէրինկէրի ճառախօսութենէն ինձի համար շատ զարմանալի սա բանը գտայ թէ մեր գիւղացին այսօր ալ կը շինէ իւր տունը այդ վերակերտեալ նախատան՝ մանաւանդ յունականին նման: Կարելի էր ընդունիլ թէ հայ գիւղացւոյն տունն՝ իւր այժմեան ձեւին մէջ՝ նախկին Յոյներէ փոխառութիւն մ'ըլլար, որովհետեւ յունական քաղաքակրթութիւնը՝ սկըսեալ Մեծն Աղեքսանդրէ եւ մասամբ նաեւ աւելի կանուխ ժամանակներէն՝ վաճառական Յոնիացւոց ձեռքով՝ ի Հայս տարածուած էր, եւ ի մանաւորի

---

[1] Mittheilungen der Anthropol. Gesells. in Wien, Bd. XXI, N. F. Bd. XI.

[2] Das deutsche Haus in seiner historischen Entwicklung, von Rudolf Henning, Strassburg 1882.

քրիստոնէութեան առաջին դարերն, երբ Հայք անուղղակի կերպով Յունաց միջնորդութեամբն ի քրիստոնէութիւն դարձան, անոնց յարեալ մնացին մինչեւ երկուց եկեղեցեաց բաժնուիլը։ Բայց այս կարծիքս անմիջապէս մերժելու է, եւ այն հետեւեալ պատճառներու համար. 1. ինչպէս վերջէն պիտի տեսնենք, հայ գիւղական տունն իւր վարգացեալ ձեւին մէջն ալ շատ նման է նախնական շէնքին, որ յետին աստիճանի պարզ շէնք մըն էր, եւ այսպիսի շէնքի մը համար փոխառութեան խնդիր ընելու ամենեւին տեղի չկայ, եւ առաջնոյն որեւիցէ զարգացումն ալ դիւրաւ կրնայ նախնականին վերածուիլ՝ առանց օտար ազդեցութեան մը գործակցութիւնն ընդունելու պէտք մ'ըլլալու. եւ 2. թէպէտ Քսենոփոնի սքանչելի ուղեգրութեան մէջ հայ գիւղացւոյն տան դասական պատկերն մեզ ներկայացնելէն ի վեր՝ երկու հազար տարի անցած է, սակայն սոյն նկարագրութիւնն այսօր եւս կէտ առ կէտ կը պատշաճի ինչ ինչ հայաբնակ գաւառաց գիւղական տներու մասանց։ Այս վերջին պատճառս զօրաւոր ապացոյց մըն է սա հին նախադասութեան թէ "Յարեւելս ամենայն ինչ անփոփոխ կը մնայ։" Ասոր հակառակ չեն ըլլար ո՛չ Պերսեպոլսոյ, Բաբելոնի եւն մեծագործ աւերակներն եւ ո՛չ աստ անդ՝ գլխաւորաբար պարսկական հարստութեանց արքունեաց մէջ պարբերաբար ծաղկող բանաստեղծական, գեղարուեստական եւ քաղաքակիրթ կեանքը։ Վասն զի այս ամէն հանկուցիչ երեւոյթք՝ կրնանք ըսել թէ երբեք կենդրոններու սահմաններէն անդին չանցան, եւ ասով ամբողջ երկրին վրայ ամենեւին ազդեցութիւն չունեցան։ Գեղացւոյն խղիկն անոնց ազդեցութենէն միշտ անմասն մնացած է։ Եթէ հայ գիւղական տան վրայ օտար ազդեցութիւն մ'ընդհանրապէս ընդունիլ պէտք է, այն ալ միայն թաթարականը կրնայ ըլլալ։ — Թաթար ըսելով Մոնգոլական-տուրանեան ազգերը

հասկընալու է —. վասն զի այս ազգերն էին, որ Լէնկթիմուրի արշաւանաց ժամանակէն սկսեալ՝ ամբողջ Փոքր Ասիոյ մէջ տարածուեցան, եւ ոչ թէ Յունաց պէս քաղաքներն՝ այլ մասամբ դաշտային տեղերն իրենց բնակավայր ընտրեցին եւ ի վեր քան զամենայն մեծանիստ խատուշատ արօտատեղիները, որով գիւղացւոյն հետ շօշափման մէջ մտնելով՝ կրնային անոր վրայ ազդեցութիւն ունենալ: Այս ամէն ազգաց քիչ ժամանակէն Մահմետական ըլլալովն՝ Հայերն ըստ կարի նուազ ազդեցութիւն կրեցին այս ոչ-քաղաքակիրթ ցեղերէ եւ իրենց ազգային նկարագիրն անխախտ պահեցին: Այսպէս օրինակի աղագաւ ուղղահաւատ մահմետականաց խստիւ արգելեալ է կրօնական սովորութեամբ[1] մը ճաշակել որեւիցէ ուտելի բան մը, զոր քրիստոնեայ մը շօշափած է, վասն զի քրիստոնէից հետ շօշափման մէջ մտնելէ կը զգուշանան. քրիստոնէից շօշափած իրերն Էրմէնիէշ, այսինքն Հայէ շօշափեալ կը կոչեն: Բայց այս հակառակութիւնը երկակողմանի եղած է. Հայ հաւատացեալ պառաւ մ՚աւելի կ՚ուզէ անօթութենէ մեռնիլ քան թէ Թըրանէշ (Թաթարէ շօշափեալ) բան մ՚ուտել: Այնպիսի ընտանիքներ՝ որ Թաթար աշնա (հիւր) կ՚ունենան, իրենց տան մէջ Թաթարաց գործածած անօթոց ձեւովն ու անուններովն սպասներ կ՚ունենան, զոր այն ատեն կը գործածեն, երբ Թաթար հիւրը ներկայ է: Այս յատուկ սովորոյթը՝ որուն տարածութեան եւ հետեւութեանց վրայ խօսիլ չէ տեղւոյս, երկուց ազգաց բուռն հակառակութիւնը կը ցուցընէ: Այս վաչկատուն ազգերն Ասիոյ խորերէն տան վերաբերեալ շատ քիչ բան իրենց հետ բերին. իրենց նուաճած երկրին մէջ՝ երկայն ատեն եւ դեռ մասամբ նաեւ ցայսօր՝ բոլորաձեւ վրաններու մէջ կը բնակէին, ըստ հետեւորդի իրենց նուաճած ժողո-

[1] Կ՚ըսուի թէ այս սովորութեան մասին Քորանի մէջ բան մը չկայ:

վըրդեան միայն վրան շինել կրնային ուսուցանել, եւ ոչ թէ տուն: Թէ այս ազգերն իրենց երկարժամանակեայ տիրապետութեան միջոցին ալ ճարտարապետութեան համար մեծ արդիւնք մը չունեցան, յայտնի է. եւ մեծանունն Թէքսիէ[1] որ ասկէ իբր յիսուն տարի յառաջ Տաճկաց մեծազօր պետութեան մէջ ուղեւորութիւններ կատարած է, կ՚ըսէ՝ թէ Տաճկաստանի մէջ գտնուող այլեւայլ փոքր ինչ գեղարուեստական ճաշակ ընծայող պալատանց եւ մզկիթներու աւերակներն պարսիկ ճարտարապետներու արդիւնք են: Այս դէպքիս մէջ սակայն շատ զարմանալի պիտի երեւայ տանց այլեւայլ մասունքը ցուցընող բառերու տաճկերէնէ հայ գաւառականաց մէջ մտած ըլլալն, զոր ես այսպէս կը մեկնեմ. Առ հասարակ հայ գաւառական լեզուաց վրայ թաթարերէնի ազդեցութիւնը մեծ եղած է. քանի մը գաւառականաց մէջ՝ տասն բառէ կազմեալ նախադասութեան մէջ իբր չորսն օտար բառ է: Այսօր Ռուսաստանի հայաբնակ նահանգաց մէջ թաթարերէնի տեղ ռուսերէնն ազդեցութիւն կ՚ընէ. զոր օր. ռուսերէն акошка (պատուհան) բառը ժողովրդեան մէջ մտած է աչօշկա ձեւով, թէեւ Ռուսաց ազդեցութենէն շատ յառաջ Հայոց ծանօթ էր "պատուհանը"[2]: Պարսից ազդեցութեան հնարաւորութեան վրայ յետոյ պիտի խօսինք:

* * *

---

[1] Texier, Description de l'Arm., de la Mésopotamie et de la Perse. Paris 1842, Didot. — Հմմտ. նաեւ Dr. Polak, Persien, das Land und seine Bewohner. Leipzig, 1865, երկու հատոր:

[2] "Պատու–հան" կազմուած է "պատ" ու "հան" (հանել բայէն = պատը ի բաց հանել, պատի մէջ բացուածք) բառերէ. նոյնպէս ռուսերէն крыша (յարկ) բառը՝ հայերէն կտուր, ծածկոց բառերու տեղ եւն:

"Պատուհան" պարսկերէն բառ մըն է անշուշտ (بادخان): Ծ. Թ.

Յայտնի է թէ ներկայ աշխատասիրութեանս նման գործ մ՚ըստ կարի կատարեալ եւ ճիշդ ըլլալու համար՝ հարկ է որ տեղն ի տեղ ըլլայ. եւ ես ալ այնպէս դիւրաւ՝ հայրենիքէն այնպէս հեռու ի Վիեննա եղած ժամանակս՝ ձեռնարկու չէի ըլլար, եթէ նիւթոյն լաւ տեղեակ չըլլայի եւ միմիայն գրաւոր ու բերանացի աղբիւրներ գործածելու ստիպուած ըլլայի։ Ի հարկէ գերմաներէն լեզուի քաջ տեղեակ չըլլալս՝ որով նկարագրութեանս մէջ պէսպէս անհարթութիւնք եւ մթարութիւնք կրնան ծագիլ, անտարակոյս գործոյս ոչ փոքր խոչընդոտ պիտի ըլլան։ Ինչպէս ըսի, իմ տեղեկութեանցս հիմն նախ եւ յառաջ իմ անձնական փորձառութիւնս է։ Ես քաղաքացի չեմ, այլ բնակած եմ այն բնակարանաց մէջ, զորոնք քիչ մ՚ետքը պիտի ստորագրեմ։ Ես շատ շրջած եմ ի մասնաւորի Եղիսաբեթուպոլսոյ նահանգին մէջ. նոյն իսկ անգամ մը հետիոտս երեք օրուան ճամբայ ըրած եմ, որ բնականաբար տասն օր տեւած է երկար դադարներու պատճառաւ, եւ կը յուսամ թէ որչափ ալ քանի մը բան մտքէս ելած ըլլայ եւ քանի մը մանրամասնութիւններ բաղձացուած եղանակաւ յառաջ չկարենամ բերել, սակայն դժուարին է թէ էական բան մը մոռցած ըլլամ։ Վերոյիշեալ ռուսական նահանգին՝ Եղիսաբեթուպոլսոյ[1] գիւղերուն միայն քաջ տեղեակ եմ. սոյն նահանգը նախկին Սիւնիքը, (Սիւնեաց աշխարհ. — աշխարհ կը կոչուէին պատմական-հայ նահանգները. —) Արցախու գաւառն եւ Աղուանից աշխարհն իւր մէջն ունի։

Ուրիշ բազմաթիւ նահանգներ ալ գացած եմ, այսպէս ի Տփղիս (ուր իմ կրթութիւնս առած

---

[1] «Եղիսաբեթպոլ», անուանակոչութիւնը նոր է եւ Ռուսներէն առնուած. քաղաքին հին անունը Հայոց քով Գանձակ էր, Թաթարաց քով Գէնձէ, զոր եւ ժողովուրդը ցայսօր ալ կը գործածէ. առաջինը քաղաքին աւելի պաշտօնական անունն է։

եմ.) Բաքուի եւ մասամբ նաեւ Երեւանի նահանգները, այլ այս նահանգաց գեղացւոց տանց ոճը լաւ չեմ յիշեր եւ աս միայն ապահովութեամբ կրնամ ըսել՝ թէ ո՛չ Հայք եւ ո՛չ ասոնց երկիրը գաղթած Թաթարները, Քրդերը եւն փայտաշէն տուն կը շինեն, եւ ո՛չ իսկ փայտաշատ գաւառաց մէջ։ Այժմեան Պարսկահայոց եւ Տաճկահայոց մասին առած բերանացի տեղեկութեանցս նայելով՝ զորոնք նաեւ ուղեգրութիւնք կը հաստատեն, այս երեւոյթը շատ աննշան եղանակաւորմամբ մ'ամբողջ Հայոց աշխարհի համար կը զօրէ, որուն վրայ քիչ մ'ետքը։

Ինծի համար մեծ արժէք ունէին այն տեղեկութիւններն՝ զորս ինծի տուին հոս Վիեննա գտնուող հայրենակիցքս։ Ասոնց՝ Հայոց աշխարհի այլեւայլ՝ իրարմէ շատ հեռու կողմերէն ըլլալովն եւ իրենց գաւառաց բնակչաց կառուցած տներն ինձ ճշդիւ ստորագրելովն ի վիճակի եղայ գոնեայ ամբողջին գաղափար մը տալ՝ թէեւ ոչ մանրամասն։ Ամէնէն աւելի կարեւոր էին այն տեղեկութիւններն, զորս ինձ տուին տեղւոյս Մխիթարեան Միաբանութեան երեք անդամները (երեքն ալ ի Տաճկահայոց)՝ Հ. Յովսէփ յԱլաշկերտէ, Հ. Յակովբոս ի Կարնոյ եւ Հ. Մատթէոս ի Խոտրջրոյ՝ որ Լազիստանի սահմանակից գաւառ մըն է։ Այս ամէն Վ. Հարց խորին շնորհակալութիւնս կը յայտնեմ։

Աշխատեցայ օգտուիլ նաեւ գրաւոր տեղեկութիւններէ՝ որ դժբախտաբար այնպէս ճոխ չեն։ Սոյն տեղեկութիւններն ամէնէն աւելի այլեւայլ ուղեգրութեանց մէջ ամփոփուած կը գտնենք, որ մեծաւ մասամբ շատ ընդհանուր են, եւ մասամբ ալ մեր պարբերական թերթերուն գաւառական մեծագին թղթակցութեանց մէջ։[1]

---

[1] Հայոց աշխարհի վերաբերեալ ուղեգրական մատենագրութիւնն ի մի հաւաքեալ կը գտնուի յինքեան շատ աննշանակ աս գործոյն մէջ՝ Du Caucase au Golfe persi-

Եւ որովհետեւ բաղձանք յայտնուեցաւ աշխատասիրութեանս համապատասխան նկարներ կցել, ուստի այնչափ աւելի սոյն բաղձանքը գոհացընելու յօրդորամիտ եղայ, որչափ որ այժմ ի Վիեննա գտնուող բարեկամս եւ հայրենակիցս՝ նկարիչն Արշակ Ֆէթվաճեան՝ սիրայօժարութեամբ յանձն առաւ իմ տուած ստուերագրերուս համաձայն սոյները պատրաստել եւ արդեամբք ալ յօժարամիտ պատրաստեց։ Նկարներն իրենց պատրաստուելու այսպիսի եղանակովն հանդերձ, պէտք եմ ըսել, ըստ կարի ճիշդ են, վասն զի այն ատեն միայն աշխատասիրութեանս մէջ առնուեցան, երբ հայրենակիցքս ամէնքն ի միասին հաւանութեամբ դրուատեցին։

* * *

Ամէնէն աւելի ընդարձակ պիտի խօսիմ ինծի մանրամասն ծանօթ Եղիսաբեթուպօլսոյ նահանգին հայ գիւղական տանց վրայ. ուստի կանխաւ սոյն նահանգին աշխարհագրական դրից եւ պատմական դիպաց վրայ քանի մը խօսք ըսելն՝ աւելորդ չէ։

Եղիսաբեթուպօլսոյ նահանգն մեծանիստն Ռուսիոյ հարաւային սահմանակից երկիրներէն մին է։ Սահմաններն են՝ հարաւէն Երասխայ վարի մասը, որ եւ Ռուսաստանը Պարսկաստանի Ատրպատական գաւառէն կը բաժնէ, եւ վերոյիշեալ երեք նահանգներն, այսինքն՝ արեւելքէն Պաքուի, հիւսիսէն Տփղիսի եւ հիւսիս-արեւմուտքէն՝ Երեւանայ նահանգը։ Ամբողջ նահանգն ի բնէ երկու շատ տարբեր մասանց կը բաժնուի, արեւմտեան-հարաւայինը՝ լեռնոտ, եւ արեւելեանը՝ դաշտային, որ կ'երթայ Մուղանու ընդարձակ անապատ դաշ-

---

que à travers l'Arm. le Kurdistan et la Mésopotamie par P. Müller-Simonis et H. Hyvernat (Paris 1892), եւ հնագոյն ճանապարհորդութիւնը առ Boucher de la Richarderie, Bibliothèque universelle des voyages. 5 հտ. (Paris et Strassbourg, 1708).

տին կը միանայ։ Այս երկու մասանց տարբերութիւնն ամենէն աւելի աչքի կը զարնէ, եթէ մէկն ամառան սկիզբը երկուքն ալ ետեւէ ետեւ տեսնէ։ Առաջին բաժնի մէջ բարձրաբերձ սրածայր ժայռեր կը բարձրանան՝ անդնդախոր ձորերով, բազմաթիւ հեղեղատներով, ինչ ինչ անմատոյց տեղեր՝ թանախնական կոյս անտառներով, խաւարչտին անձաւներով եւ կրճերով, որոնց գիրկը մշտնջենաւոր ձիւնը կը հանգչի, լայնատարած արօտատեղիներով՝ ուր ամառն անհամար ոչխարաց հօտերն ու արջառաց նախիրներն ուրախ զուարթ կ՚արածին։ Ընդհակառակն միակերպ եւ խոնջեցուցիչ ազդեցութիւն կ՚ընէ մարդուն վրայ մեծ անապատ դաշտը։ Եթէ մէկն Շուշիէ Բաքու կամ Գանձակի վրայէն Տփղիս երթայ, մեծ տարբերութիւնը յայտնի կը տեսնէ. լերանց քաղցրասիք հովէն եւ անտառաց շուքէն տակաւ տակաւ կ՚իջնայ մարդ երկիր մը՝ որուն այժմեան անմշակ վիճակը զմարդ կը լլկէ, որ սակայն մշակուելով արեւադարձային երկրի մը պէսպէս օրհնութիւններն կ՚ընծայէ, ինչպէս ակնյայտնի կը ցուցընեն մարդկային արուեստով եւ մարդկային աշխատութեամբ յառաջ եկած արգաւանդ հանգրուանները (oasis) իրենց ստուերախիտ վեհատեսիլ սօսիներով (platane), այգեստաններովն ու որիզի դաշտերովն։ Այս այն գաւառն է, ուր միեւնոյն օրը կլիմայի ամէն հնարաւոր փոփոխութիւնները կրնայ մէկը տեսնել։ Երբ յամին 1889 Յուլիս ամսոյն՝ ամառուան արձակուրդին լերանց վրայ կը թափառէի՝ այնպիսի ձիւնախառն բքի բռնուեցայ, որ ստիպուեցայ անմիջապէս վար իջնալ եւ ապաւինիլ հոն՝ ուր խաղողն կատարելապէս հասունացած էր։

Դաշտային բաժնին մէջ խեղդիչ տաքութիւն մը, ջրոյ եւ դալարեաց պակասութիւն կայ՝ որ ճանապարհորդը կը նեղեն. ասոր հակառակ լեռնային մասն ալ իւր անթիւ դժուարութիւն-

ներն ունի։ Մինչեւ Շուշի կառուղի ճամբայ կայ, բայց անկէ յառաջ դէպ ի Արցախու ու Սիւնեաց ներքնակողմը՝ կամ հետիոտն եւ կամ ձիով ու ջորիով կ'երթացուի։ Բնակիչք առաջինը նախադաս կը համարին եւ լաւ քալող են. լուր մ'արագ հասցընելու համար երբեք հեծեալ չեն ընտրեր, այլ հետիոտն քալող մը՝ որ առ նուազն հեծելոյ մը կրկին արագութիւնն ունի։ Լեռնային մասին գիւղային տակաւին կառք գործածել չի գիտեր եւ Ռուսիոյ՝ իբր տասն տարի յառաջ գիւղացիները Շուշիէ մինչեւ մերձակայ Կեորէս քաղաքն սուրհանդակի ճամբայ մը բանալու ստիպելն ալ՝ օգուտ մ'ունեցած չէ։ Սոյն ճամբուն վրայէն միայն շաբաթն երկու անգամ սուրհանդակը կ'երթեւեկէ եւ քանի մը բեռնակիր սայլեր, բայց ոչ քիչ անգամ՝ մանաւանդ գարնան՝ սոյն երթեւեկութիւնն ալ կ'ընդհատի սաստիկ յորդահոս անձրեւներու պատճառաւ, որ հեղեղատներ կազմելով ճամբան գրեթէ անգործածելի կը դարձընեն։ Բնիկ երկրային վաղուց արդէն սոյնպիսի ճանապարհաց վարժած է. իւր գրաստին հաստատուն քայլերուն վստահ՝ առանց ամենեւին անհանգստութեան եւ երկիւղի հետք ցուցընելու անվեհեր կը նստի թամբի վրայ եւ սանձը թոյլ կը թողու, վասն զի գրաստը հարիւր անգամ տարած է իւր տէրն անվտանգ սոյն ճանապարհաց վրայէն։

Երկիրն իւր այս անհարթութիւններովն հանդերձ՝ որ հին ժամանակները մեծ առաւելութիւն կը համարուէին, իւր ամբողջ պատմութեան ժամանակ այնպիսի առաւելութիւններ ունեցած է իւր ամուր ու անառիկ դիրքովն, որ արտաքին թշնամեաց գրեթէ անկարելի եղած է ներս մտնել։ Եթէ թշնամիք անապատ դաշտէն անվտանգ անցնէին՝ լեռնային գրեթէ անգնաց մասին կը հանդիպէին, եւ եթէ նենգութեամբ կամ մատնութեամբ ճամբայ բանալով ներս մտնէին՝ քիչ մը

յառաջանալէ ետքն իրենց կորուստը կը գտնէին։ Վասն զի երբ Թշնամին երկիրն ոտք կը կոխէր, բնակիչք կամ մեծ ու խաւարամած կոյս անտառաց[1] ներքնակողմերը կը քաշուէին՝ ուսկից առանց տեսնուելու Թշնամւոյն վրայ իյնալով՝ անոր զօրութիւնը կը խորտակէին, եւ կամ այնպիսի ամուր տեղեր կ՚ապաւինէին, զոր բնութիւնը մարդոց համար պատրաստած էր։ Դժբախտաբար անտառաց մեծագոյն մասն արդէն փճացած է, եւ հաւանականագոյնս մնացածն ալ քիչ ժամանակէն անոնց վիճակակից պիտի ըլլայ առ ի չգոյէ պաշտպանութեան. ամուր տեղերը անցեալ արիւնային, փառաւոր գործոց իբր անխօս վկայ կը մնան։ Բայց Թշնամւոյն անգամ մ՚երկիրը մտնելէն ու հաստատուելէն ետքն՝ նոյնպէս դժուարին էր զինքն արտաքսել, ինչպէս որ ժամանակաւ ոչ շատ հեռու (անցեալ դարու վերջը) Թաթար իշխանի մ՚օրինակը կ՚ապացուցանէ։

Սերնդեամբ անծանօթ սոյն Պանա՝ յետոյ Պանա-խան անուն անձը նենգութեամբ Մելիք Շահնազարէն՝ Ջանախճիի հայ հզօր իշխանէն այժմեան ամուրն Շուշույ մերձակայ խոպան երկիրն առաւ, որուն երեք կողմանէ մինչեւ խոր անդնդոց յատակն իջնող եւ կարծես քաջ արուեստագիտայ ձեռօք ողորկեալ՝ սեպ ու ցից ժայռէ պատերն քիչ բանի կը կարօտէին նոյն ատենուան համար անառիկ ամրոց մ՚ըլլալու եւ զՊանա իւր անխոհեմ բարերարին տէրն ընելու։ Շվայկէր-Լէրխէնֆէլտի[2] քով այս ամրոցի մասին կենդանի նկարագրութիւն մը կարդանք՝ որ Ռոսմէսլէրի գրչէն է։

---

[1] Սիւնիք եւ մանաւանդ Արցախ այսօր Ղարա-բաղ անուամբ ծանօթ են, որ Թաթարերէն Սեւ-անտառ ըսել է եւ մեծամեծ անտառաց գոյութիւնը մատնանիշ կ՚ընէ, որ այժմ մեծաւ մասամբ կորուած են։

[2] Zwischen Donau und Kaukasus. Land- und Seefahrten im Bereiche des Schwarzen Meeres. Wien, 1887, էջ 440։

"Շուշւոյ մերձենալով երկիրը շատ հետաքրքրական երեւոյթ մը կ'առնու։ Միշտ աչացդ առջեւ ունիս լեռնադաշտի միջավայրն կազմող բարձր լեռն, որուն գագաթը քաղաքը կը պսակէ։ Սպիտակ քաղաքորմերը նեղ ժապաւէնի մը պէս կը պատեն այս մեծագործ պատուանդանին — զոր թէ քաղաք մը կրնայ ունենալ — ծայրը։" Ասա (էջ 441 եւն.) "Երեք կողմանէ աւելի բարձր լեռներ կը պատեն այն լեռը՝ որուն վրայ Շուշի կը հանգչի։ Այս հսկայ լերանց մէջի վիհերն ու անդունդներն անյատակ են եւ սոսկում կը պատճառեն, մանաւանդ տեղ մը՝ ուր ժայռը մինչեւ անդունդ այնպէս ուղղահայեաց կ'իջնայ, ինչպէս որ ուղիղ քաղաքորմը կը բարձրանայ իրեն վրայ, եւ ուր Մելիքներու եւ Խաներու ժամանակ մահապարտները գահավէժ կը նետուէին։ Բայց ամէնէն գեղեցիկ տեսքն է դէպ ի հիւսիս՝ այն ուղղութեամբ՝ ուր լեռնադաշտը դէպ ի ցած խորագետինը կը բացուի։ Հոս ուղղակի առջեւդ կը տեսնես բարձրաբերձ լեռնասարերէ շրջապատեալ լեռնաշարքը՝ գեղազուարճ Խան-Քէրտիով (Խանի գիւղ*), որ փոքր կէտի մը պէս կ'երեւայ։ Եթէ աչքդ լերանց կողերուն վրայ հանգչեցընես, անմիջապէս կը գտնես այն տեղն՝ որ լերանց մուտքն է եւ այդ մուտքէն կը տեսնուի 20 մեղրէ աւելի լայն տափաստանը եւ կրնաս՝ մանաւանդ երբ գիշերն լուսաւորեալ է, Կաւկասի մեծափառ շղթան տեսնել։" Յիշեալ "լերանց մուտքը" Մելիքներու ժամանակ՝ եւ թերեւս աւելի կանուխ ալ՝ բաւական երկայն պատով մ'եւ աշտարակներով ամրացուած էր, որ ցայսօր ամբողջապէս շատ լաւ պահուած կը կենան։ Այս պատերը՝ թէեւ շատ չնչին չափով, ճենական պատերը կը յիշեցընեն, որ նոյն Թաթար-մոնղոլ ասպատակաց դէմ պաշտպանելու շինուած էին։

---

* خانغرده կը նշանակէ՝ Ամարանոց։ Ծ. Թ.

Այս հարեւանցի նկարագրութեամբ ուզեցի գաղափար մը տալ, թէ երկրին բնական որպիսութիւնն որչափ նպաստաւոր էր իր մէջը բնակող Հայերը թշնամեաց յարձակումներէն եւ օտար ազդեցութիւններէ զերծ պահելու։ Թերեւս Հայաբնակ գաւառաց մէջէն ոչ այլ ուրեք հայկական նկարագիրն այնպէս անխախտ ու անխառն մնացած է, ինչպէս Արցախու ու Սիւնեաց պատմական նահանգաց մէջ։ Այս ազդեցութիւնը կ'ընեն մարդուս վրայ այն գաւառին անցից վրայ խօսող պատմաբաններու գրութիւններն, այս ազդեցութիւնը կ'ունենայ մարդ, եթէ այսօր այն տեղ բնակող Հայերն տեսնէ։ Ուստի եւ ամենայն իրաւամբ կրնայ հայ նշանաւոր քննիչը՝ Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան ըսել.[1] "Հայկական սեփական կերպարանք՝ Այրարատեան բնաշխարհէն զատ, ուրիշ տեղ այնքան ճշգրիտ չեն երեւար յերկրի Հայոց՝ որպէս ի Սիւնական աշխարհի։ Սիւնիք յամառագոյն իմն երեւցած են ի պահպանութիւն ազգային ոգւոյ եւ աւանդից, ունելով բազմաթիւ նշխարս եւ արձանս նախնեաց, գրաւորս եւ անգիր. եւ զարմանալին այն է՝ որ հին ժամանակներն մինչ այնչափ սերտիւ յարուած չէին երեւնար ազգին համաշխարհական վարչութեան հետ, ամրագոյն պահեր են զոգի ազգային. որոյ պատճառն անշուշտ բնակչաց ազատասէր բնաւորութիւնն եղած է, եւ նաեւ քաջութեան կորով, որով երկար ատեն դէմ կեցան օտարաց բռնութեան, օժանդակուելով երկրին դիրքէն ու բնական հաստուածէն։"

Գլխաւոր պատճառ մ'ալ էր, "որ երբ Ար-

---

[1] Հ. Ղեւոնդ Ալիշան իւր անգին գործերէն մին ալ Սիւնեաց վրայ առաջիկայ տարին պիտի հրատարակէ, ինչպէս արդէն Հայոց երեք ամենակարեւոր նահանգաց վրայ նոյն ոճով պատմական-աշխարհագրական-գրական տեղեկութիւններ հրատարակած է։ Հրատարակուելիք աշխատութենէն քաղուածք մը գտայ Բազմավէպի մէջ, 1891, Դեկտ. էջ 321, զոր եւ այստեղ կը գործածեմ։

շակունեաց երկրէն վաղուց արդէն խափանուած էր հին Հայկազանց անունն եւ իշխանութիւն, եւ Արշակունի հարստութեան վերնալէն ետքն ալ, միայն իշխանք Սիւնեաց՝ Հայկազունք կը կոչուին Բագրատունեաց ժամանակ, ինչպէս անոնցմէ յառաջ ու ետքը։„

Մինչդեռ հայ բազմաթիւ նահանգաց մէջ օտար երկիրներէ եկած իշխանական տոհմերը իշխանութեան հասնելով եւ օտար հարստութիւններէ (այսպէս յԱրշակունեաց) նպաստ գտնելով մեծ ճոխութիւն ու հռչակ ստացան (Արծրունիք, Մամիկոնեանք, Բագրատունիք եւն,) ի Սիւնիս ի սկզբանէ անտի միշտ բնիկ, հայկազուն իշխաններն երկրին տէրը մնացին. բայց ամբողջ երկրին համար նշանակութիւն ունենալ յաջողած չեն։ Իշխանական այս ցեղին հին առասպելախառն պատմութիւնը կը գտնենք առ Մովսիսի Խորենացւոյ՝ հայ մեծագոյն պատմագրին ի Ե դարու, այսպէս։[1]

“Իսկ Գեղամ (ըստ Մ. Խորենացւոյ՝ հինգերորդ ի Հայկայ սրու զաւակ) յետ ամաց անցանելոյ ծնեալ զՀարմայ յԱրմաւիր, եւ թողեալ զՀարմայ յԱրմաւիր՝ հանդերձ որովք բնակէրն եւ ինքն գնայ զմիւս լերամբն արեւելեան հիւսիսոյ, յեզր ծովակի միոյ։ Շինէ զեզր ծովակին, եւ թողու անդ բնակիչս. եւ յիւր անուն եւ սա զլեառնն անուանէ Գեղէ, եւ զշէնսն՝ Գեղաքունի[2], որով կոչի եւ ծովն։

Աստ ծնեալ զորդի իւր զՍիսակ, զայր սեգ եւ անձնեայ, բարեգեղ, կորովաբան եւ գեղեցկաղեղն։ Սմա զմեծ մասն յընչից իւրոց տուեալ, եւ զծառայս՝ անձինս բազումս, սահմանս հատանէ նմա ժառանգութեան ի ծովէն ընդ արեւելս մինչեւ ցդաշտ մի, ուր գետն Երասխ հատեալ զքարանձաւս

1 Մովս. Խոր. Պատմ. Հյ. Ա, 12։

2 Այստեղ յիշուածն է այն լիճն, զոր Եւրոպացիք Sewanga կը կոչեն, իսկ Հայք “Սեւանայ„ եւ “Գեղամայ Լիճ։„

լերանց՝ անցանէ ընդ խոխոմաձիգս նեղս, եւ ահագին դղրդմամբ իջանէ ի դաշտն[1]։

Աստ բնակեալ Սիսակ, ըստ շինութեամբ զօրահմանս բնակութեան իւրոյ. եւ զաշխարհն կոչէ իւրով անուամբն Սիւնիք. այլ Պարսք յստակագոյն իսկ Սիսական կոչեն։

Ի սորա ծննդոց աստ ուրեմն Վաղարշակ, որ առաջին ի Պարթեւաց արքայ.... գտեալ արս անուանիս, տեարս աշխարհին կարգէ, որ է Սիսականդ ազգ. եւ զայս առնէ Վաղարշակ ի պատմութենէն ստուգեալ։"

Իշխանական այս ցեղը երկայն ժամանակ հզօրագոյններէն մին էր եւ այնպէս ալ մնաց, բայց շատ հակառակորդ ունենալուն չկրցաւ նշանաւոր դեր մը խաղալ։ Հազիւ երբ Ե դարուն Պարսից ձեռօք Արշակունի վերջին թագաւորն ինկաւ ու երկիրն անտէր մնաց, սիսական ցեղին գլխաւորը՝ Վասակ Սիւնի՝ Պարսից օգնութեամբն թագը յինքն կորզել փորձեց, եւ Յազկերտ Բ՝ Պարսից օգնութեան ի տրիտուր Հայերն ի քրիստոնէութենէ ի զրադաշտութիւն՝ ի կրակապաշտութիւն դարձնել խոստացաւ։ Թէ Վասակ՝ ժողովրդեան քրիստոնէութեան մէջ որչափ հաստատ ըլլալուն վրայ շատ տկար գաղափար ունէր եւ եկեղեցականաց ժողովրդեան վրայ ունեցած ազդեցութիւնն ի հաշիւ առած չէր, յայտնի է ամբողջ ժողովրդեան՝ եկեղեցականաց եւ Վարդանայ Մամիկոնենից առաջնորդութեամբ Պարսից հակառակելէն։ Եւ երբ Պարսիկք ահագին զօրութեամբ՝ Վասակայ բանակներն ալ աջակից ունենալով ի Հայս մտան՝ պինուք իրենց

[1] Հմմտ. Spiegel, Eranische Alterthumskunde. Leipzig, 1873. Bd. I, էջ 148։ "Ի վերջայ Երասխ կտրելով Ալակեօզի շղթան՝ որ արեւելքէն հարաւ կը ձգի, եւ 100 մեդր բարձրութենէ վար թափուելով — այս ջրվէժը Հայք "քարավազ" կը կոչեն տ. S. Martin, Mémoires sur l'Arm. — կը մտնէ Մուղանու դաշտը եւ Կուրի հետ կը միանայ եւ Կասպից ծով կը թափի։"

կամքը կատարել տալու համար — վասն զի խաղաղական միջոցներն, մեծ ամեծ խոստմունքը օգուտ մ'ունեցած չէին — Երասխայ մէկ ճիւղին՝ Տղմուտ գետին եզերքը Հայոց քրիստոնէութեան համար վառեալ եւ պատերազմի պատրաստ գնդին հանդիպեցան։ Հոս մղուեցաւ ազգային-քրիստոնէական ամենամեծ ճակատամարտն ընդդէմ կրակապաշտ Պարսից. եւ թէպէտ Հայք իրենց զօրավարը զՎարդան կորուսին եւ ստիպուեցան թշնամւոյն առաւելութեան տեղի տալ, սակայն Պարսից տարած յաղթութիւնն ոչինչ իւիք կը տարբերէր այն յաղթութենէն, զոր Պիւռոս Հռովմայեցւոց վրայ տարած էր։ Պարսիկք շուտով ետ քաշուեցան եւ այն ժամանակէն ի Հայս քրիստոնէութիւնը բռնութեամբ բառնալու խորհրդէն հրաժարեցան։ Այս բարոյական պարտութիւնն ամէնէն աւելի իւր ազդեցութիւնը Սիւնեաց, բայց ի մասնաւորի Վասակի վրայ ըրաւ. ամբողջ ազգը զինքը իբր մատնիչ արտաքսեց, իսկ Յազկերտ բանտ նետել տուաւ իբր սկզբնապատճառ այն ձախող ձեռնարկութեան, ուր եւ վախճանեցաւ։ Վասակ անունը նոյն ատենէ ի վեր "մատնիչի" հոմանիշ մնաց։

Թէպէտ եւ Պարսից մեկնելէն ետքն՝ մնացեալ Հայք Վասակայ երկրին վրայ յարձակեցան, սակայն տեւական յաջողութիւն չունեցան։ Սիւնիք — բաց ի բարոյական ազդեցութենէն — յառաջուան պէս հզօր մնաց, բնականաբար աւելի ինքն իրմով միայն՝ եւ երկայն ժամանակ մնացեալ Հայոց վրայ առանց ազդեցութիւն ունենալու։ Սիսական ցեղին իշխաններն շատ ուշ թագաւորութեան հասան. եւ երբ Ռուսներն Հայոց մի մասն Պարսիկներէ առին, Արցախու եւ Սիւնեաց մէջ բնիկ փոքրիկ իշխաններ — մէլիքներ — գտան՝ որ մեծ տոկունութեամբ ու զարմանալի քաջութեամբ իրենց անկախութիւնը պահած էին՝ ի հարկէ անընդհատ պատերազմելով մերթ Տաճկաց եւ մերթ Պարսից հետ։

Սիւնեաց ու Արցախու բնակիչները, որ այժմ "Ղարաբաղցի" անուամբ ծանօթ են, ընդհանրապէս հայկական բնիկ տիպն ունին, ինչպէս Շպիկել իւր Eranische Alterthumskunde անուն գործոյն մէջ (Հտ. Ա, էջ 365) շատ լաւ կը բացատրէ: Բարձրահասակ եւ հուժկու են եւ սաստիկ մազոտ. քիչ մը խիստ կերպարանք, ցած ճակատ, թանձր յօնք, մեծ եւ սեւ աչք, դուրս ցցուած արծուենգն քիթ ունին: Շատ գործունեայ եւ հաստատակամ կը համարուին: "Ղարաբաղցին իր ասածի մարդ ա:" Ղարաբաղցւոց քաջութիւնը ամէն տեղ ծանօթ է:

Ղարաբաղցիք Ռուսիոյ բանակին բազմաթիւ քաջ ու հոյակապ զօրապետներ տուած են. Նշանաւորագոյններն են Լազարեան՝ որ վերջին ռուսական պատերազմի մէջ Կարսն առնլով մեծ անուն ու համբաւ հանեց, եւ Մատաթեան՝ որ ռուսական բանակը մինչեւ Դավրէժ յաղթապանծ տարած է:

Ղարաբաղցիք այնպիսի գաւառական մը կը խօսին, զոր ուրիշ տեղերու Հայերը դիւրաւ չեն հասկընար: Այն լեզուն ուսումնասիրած ժամանակ երեւոյթ մը կը պարզէ՝ որ երկրին նորագոյն պատմութեան տեղեակ չեղողի մը՝ հարկ է որ զարմանալի երեւայ. այսինքն իրարու շատ մօտ գիւղերու մէջ անգամ Ղարաբաղցւոց ընդհանուր բարբառէն մեծ տարբերութիւններ կը լսուին, զոր սակայն մեկնել շատ դիւրին է: 1828ի եւ 1829ի պարսկական ու տաճկական պատերազմներէ ետքն Ռուսիա ամէն հնարաւոր միջոց գործածեց Հայերն այն երկիրներէն՝ զորոնք գրաւել չկրցաւ, իւր երկիրը բերելու. Հայք մահմետականաց թող տուած գիւղերը բերուեցան եւ ասով Ղարաբաղ՝ որ մերձաւոր երկիրն էր, շատ Հայք եկան: Թէեւ այն օրէն ի վեր յիսուն տարիէ աւելի անցած է, սակայն գաւառաբարբառին միակերպութիւն տակաւին եղած չէ, եւ ասոր գլխաւոր պատճառն է հաղորդակցութեան յարա-

բերութեանց շատ յոռս եւ նախնական վիճակը։[1]

Ղարաբաղցւոց բարբառը շատ խիստ է, ինչպէս ամէն լեռնաբնակ ժողովրդոց լեզուն, եւ երկայն բառերու բարեկամ չէ. ամէն եռավանկ կամ քառավանկ անուն՝ երկու վանկի վերածուած է. այսպէս՝ Խաչատուրը եղած է Խաչլի, Աստուածատուրը՝ Ծատուր, Փարսադանը՝ Փարսի եւն, առհասարակ հայերէնի միջին գրերը թաւ եւ նուրբ գրի փոխուած են, այսպէս Գրիգորը Կոքէ եղած է, Սարգիսը՝ Սաքէ։ Միջին գրերու կորսուած ըլլալը կը հաստատէ նաեւ Ղազ. Աղայեանց, որ (անդ, էջ 35) կ'ըսէ. "Ղարաբաղի բարբառի մէջ հետեւեալ տառերը բ, գ, դ եւ ջ այնքան նրբացել են, եւ տեղացւոյն միայն կարելի դառել հնչելը, որ կարող ենք ասել թէ կորել են բոլորովին։„ Իբր օրինակ յառաջ կը բերէ. Բարի (bari) եղած է պարի (pari), բոյնը (bujn)՝ պիւն (piun), բաճակը (badjak)՝ պեճակ ((pedjak), գարին (gari)՝ կեարի (kjeari), ջոյնը ճէն եւն։

Գաւառաբարբառոյս այստեղ իբր օրինակ յառաջ բերուած յատկութեանց վրայ աւելցնելու է նաեւ մասամբ պարսկերէնէ եւ մասամբ թաթարերէնէ փոխառեալ բառերն ու բացատրութիւնները, որ շատ անգամ լեզուն այնպէս կերպարանափոխ ըրած են որ սոյն յիշեալ լեզուները չգիտցողին համար անիմանալի կը մնայ։ Յիշեալ ժողովուրդք հարիւրաւոր տարիներէ ի վեր ի միասին ապրելով՝ այնպիսի երկակողմանի փոխառու-

---

[1] Ղզր. Աղայեանց՝ փոքրիկ տետրակի մը մէջ՝ "Հայկական հնչիւնների մասին„ (Տփղիս, 1874, էջ 35) կ'ըսէ. "Ղարաբաղը (չը հաշուելով Շուշի քաղաքը) ունի հինգ գլխաւոր գաւառ։ Այդ հնգեքին գաւառների մէջ միակերպ չեն խօսում, գոցա միմեանց մէջ եղած տարբերութիւնը շատ մեծ չէ, բայց այնքան էլ քիչ չէ, որ խօսելու ժամանակ իսկոյն չը նշմարուին, թէ որը որ գիւղից կամ գաւառից պէտք է լինի։„

թիւնք անխուսափելի եղած են. ասոր վրայ յաւելլու է միանգամայն սա ալ որ այնտեղ ամէն հայ՝ նոյն իսկ ի մանկութեան կը սորվի կատարելապէս խօսիլ թաթարերէն մը՝ որ պարսկերէնէ շատ կրած է։

---

## Ա.

## ՀԱՅ ԳԻՒՂՆ ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ

Այն պատճառներու համար՝ զորոնք քիչ մ'ետքը պիտի պարզեմ, գիւղերն ու հասարակ իրարմէ հեռու են։ Տներն այնպիսի եղանակաւ մ'իրարու կցուած են, որ անվարժ անձ մ'առաջին տեսութեամբ չի կրնար անոնց թիւն ճիշդ որոշել։ Այլեւայլ պատմական պատճառներ ստիպած են զմարդիկ նախ՝ գիւղութենէ աւելի ապահովութեան մտադիր ըլլալ. այս վախճանաւ ալ իրարու կից են, որպէս զի ամէն վտանգի ժամանակ դրացին կարենան իրենց օգնական ունենալ. այս վախճանաւ այնպիսի վայրեր իրենց բնակութեան տեղի ընտրած են, ուր բատ ինքեան յափշտակիչ թռչունք իրենց բոյնը դնելու էին։ Ինչ որ երբեմն հարկ անհրաժեշտ էր, այսօր՝ ինչպէս ու հասարակ կ'ըլլայ, սիրելի սովորութիւն դարձած է։ Գրեթէ ամէն հայ գիւղ (բացառութիւնք շատ քիչ են) գոնեայ իմ նկարագրած Սիւնեաց ու Արցախու նահանգաց մէջ՝ կամ ցից, ամուր ու ապահով բարձանց վրայ են, եւ կամ անդնդախոր ու ամէն կողմանէ փակեալ ձորերու մէջ, որ կամ իրենց դիրքն ապահովութեան երաշխաւոր կ'ըլլան, կամ իրենց մօտերն ամուր ապաւէններ ունին։ Շատ անգամ գլխու պտոյտ կ'ունենայ մարդ, երբ լերան բարձր գագաթէն իջնալով կամ անդնդախոր ձորէ մ'ելլելով մարդկային այսպիսի բնակավայրի մը կը մերձենայ։ Ուղեւորն որչափ յոգնած ալ ըլլայ, հարկ է որ

ձիէն իջնայ եւ օձաձեւ ծամածուռ ճամբաներու վրայէն — որ այս անունն կրելու արժանի չեն, — քարերու փարնուելով եւ ցեխի մէջ ընկղմելով քալէ՝ իւր նպատակին հասնելու համար։ Երբ վերջնալուսին գիւղն սկսին հոս հոն լոյս վառել, հեռուէն լուսն այնպէս մը կ՚երեւայ իբր թէ օդոյ մէջ լոյսերն կը թռչին։ Դաշտային երկիրներու գիւղերն նախկին վտանգաւոր ժամանակներն պարսպով շրջապատուած կ՚ըլլային. (Հմմտ. Շահխաթունեան, Ստորագրութիւն կաթուղիկէ Էջմիածնի եւ հինգ գաւառացն Արարատայ. Երկու Հատոր, Էջմիածին 1842։ Հտ. Բ. էջ 35) “Շահրիար... գիւղ մերձ յԱրմաւիր.....ունէր յառաջագոյն շուրջանակի պարիսպ ի հողոյ՝ որպէս այլ բազում գիւղորայք ի դաշտի աստ Արարատայ ի պատճառս ապստամբութեան Լէզկեաց եւ այլ մերձակայ սահմանակից թշնամեաց։„ Ինչպէս վերը յիշեցի, թէպէտ Հայք ի Ղարաբաղ Պարսիկներէ անկախ կ՚ապրէին, սակայն դժբախտաբար բաւական բազմաթիւ վաչկատունք հետզհետէ դաշտային երկիրը գրաւելով՝ սկսան իրենց անվերջ յարձակումներովն խաղաղասէր երկրագործ Հայերը նեղել, որ ոչ իրենց անուանական վեհապետներէն՝ Պարսից թագաւորներէն պաշտպանութեան յոյս ունէին, եւ ոչ իրենք բաւական զօրութիւն ունէին թշնամին վանելու։ Բնութիւնն իրենց թէեւ նիզակակից ըրին, այլ ասոր փոխարէն՝ առ տակաւ տակաւ ամենալաւ ու պտղաբեր ագարակներն ու այգիները կորուսին ի գին ապահովութեան կենաց եւ ի պահպանութիւն ազգայնութեան....։

Այն արգաւանդ դաշտերն՝ ուր երբեմն բազմաթիւ Հայք կը բնակէին, այժմ բոլորովին անմշակ վիճակի մէջ՝ Թաթարաց կամ Քրդաց ձեռքը կը գտնուին։ Տեղւոյն նախկին բնակչաց ու անոնց աշխատասիրութեան մի միայն պերճախօս վկաներն են աւերակաց մեծ ու լայնածաւալ քարակոյտերը,

կիսակործան եկեղեցիք եւ բազմածիւղ արուեստակերտ ջրուղիք։

Մեծ պողոտաներու մօտ շատ քիչ գիւղ կը գտնուի. ուստի եւ ստէպ՝ ամբողջ օր մը ճանապարհորդելով գիւղի չես հանդիպիր, որ պարագան ուղեւորին՝ ի մասնաւորի ամառն ու ձմեռը՝ մեծամեծ դժուարութիւններ կը պատճառէ, երբ կ'աճապարէ եւ այնտեղ հանդիպելով չ'ուզեր ժամանակ կորսնցընել։ Այսպէս՝ ստիպուեցայ ես անգամ մը Տաթեւու վանքէն Կեորես աւանը դարձած ժամանակս՝ — որչափ կը յիշեմ — իբր կէս օր տեւող ճամբայ մ'արեգական կիզիչ ճառագայթից տակ կտրել անցնիլ եւ ծարաւս անցընելու տեղ մ'ալ աղբիւր չգտայ. հազիւ իրիկուան դէմ հընձողներու պատահեցայ, որ սիրով ինձի խմելու ջուր տուին իրենց քով մնացած պաշարէն։ Հեռուէն նախ եւ յառաջ գիւղին եկեղեցւոյն (որ առհասարակ գիւղին մէջտեղը բարձրադիր տեղ մը կառուցուած եւ փոքրիկ պարտիզով մը շրջապատուած կ'ըլլայ,) փայտաշէն աշտարակը կը տեսնուի՝ որ իբր ամէնէն բարձր շէնք նախ աչքի կը զարնէ։ Գիւղ մերձեցողն՝ շանց գրեթէ խլացուցիչ հաջիւնը կը լսէ։ Շունք գիւղերու մէջ մեծ բազմութեամբ իբր պահապան կը պահուին եւ որչափ աւելի վայրենի են, այնչափ աւելի յարգի են։ Շատ աւելի վտանգաւոր են չըբանի (հովուական) շուն անուանեալք, զոր դիտմամբ մարդէ ու բնակարաններէ միշտ հեռու կը պահեն եւ երբեք հօտէն բաժնելով գիւղ չեն բերեր, որպէս զի վայրենի մնան եւ մարդու չընտելանան։ Միայն ամառը կարելի է՝ երբ արեգական կէսօրուան ջերմութիւնն ամէն կենդանի էակները ստուերախիտ զով տեղեր կը հրաւիրէ, առանց այդ կենդանեաց աղաղակէն նեղուելու փողոցները շրջիլ։ Դր. Պառոտ[1] շատ

[1] Dr. Friedrich Parrot, Reise zum Ararat, Berlin 1834։ Երկ. Հտ.։

գործ ունեցած է այսպիսի կենդանեաց հետ. "Կատաղի շունք՝ որ ոչ դոյզն անգամ զօրաւոր կ'ըլլան, ամէն զինեալ օտարականի գիւղ մտնելը կ'արգելուն եւ Թաթարաց գիւղն եկողն, եթէ քրիստոնեայ է, մեծամեծ նեղութիւններ կը կրէ. ասոնց փորձն ես ալ բաւական առի։"

Սովորաբար ամէն գիւղ մերձակայ կողմերն իւր բախչաներն՝ պտղոյ ու կանաչեղինաց պարտէզներն ունի. առ հասարակ դժուարին է գիւղի մէջ այնպիսի տներ գտնել՝ որ պարտէզ ունենան։ Տեղւոյն դիրքին, կլիմային եւ ջրաշատ ըլլալուն համաձայն կ'ըլլայ պարտիզաց մեծութիւնը, որ գեղեցիկ տեսք մը կ'ունենան իրենց պտղատու ծառերովն՝ որ են կեռասենի, ծիրանի, թթենի, ընկուզենի, դեղձի, նռնենի եւ սերկեւլի։ Տաճկաստանի մէջ այնպիսի գիւղական տներ ալ կան՝ որ պարտիզով շրջապատուած են, ինչպէս կը ստորագրէ Շոլէ։[1]

"Պարտիզաց անընդհատ շարքն տասն քիլոմեդրէ աւելի տեղ կը գրաւէ։ Պարտէզք բարձր հողէ պատերով եւ կաղամախիներով շրջապատուած են, որոնց մէջ խառն ի խուռն տնկուած են՝ խընձորենի, կեռասենի, ընկուզենի, թթենի եւ նմանապէս որթատունկի վեհ բներ։ Տները՝ որ մեծ բազմութեամբ այս պարտիզաց մէջ ցիր ցան կը գըտնուին, նոյնպէս եւ այն գիւղերու տները՝ որոնց մէջէն հետզհետէ անցանք, ամառն հաճոյական ապաստանարան մը պիտի ըլլան (էջ 44)։" Ինքը ձմեռը կը ճանապարհորդէր։ Իւր նկարագրած գիւղերը Կեսարիոյ շրջակայքն են։ Տանց համար կ'ըսէ. "Դժբախտաբար յետին աստիճանի գէշ շինուած են, եւ գլխաւորաբար կը բաղկանան հողէ երկու պատէ՝ որոնց վրայ կը հանգչի հողէ կամ յարդէ

---

[1] Compte de Cholet, Arm., Kurdistan et Mésopotamie, Paris 1892։

յարկը՝ յենլով ճիւղերու կամ յուռի տաշուած տախտակներու վրայ։ Պատուհանի տեղ կը բանեն բազկի հաստութեամբ ծակեր, որ աղէկ կամ գէշ իւղոտած թղթով փակուած կ'ըլլան. ասոնք Աշխոյ մէջ սուղ ապակեայն տեղը կը բանեն աւելի աժան կերպով՝ բայց նաեւ տգեղ երեւութով։"

"Ահա այսպէս կը բնակին ամբողջ Փոքուն Աշխոյ բնակիչք. եւ սակայն այս ողորմելի տները, ուր գիշերն անցընելու համար ալ մեծ դժկամակութեամբ կը մտնէինք, մեզի պալատ կ'երեւան, եթէ համեմատենք այն նեղ որջերու հետ՝ ուր Քուրդք ու Հայք ձմեռը կ'ապաստանին։"

Գիւղացւոց կալը ու մարագը այս պարտիզաց մէջ է։ Մի միայն այս շէնքերը՝ յետ եկեղեցւոյ շէղ տանիք ունին։

Հայ գիւղի մ'արտաքինն՝ առանց նայելու ոչ-լաւ դիրքն ի նկատի առնլու, շատ քիչ մխիթարական երեւոյթ ունի եւ հազիւ թերեւս Եւրոպացի մ'ուզէ այդտեղ ամառն անցընել։ Տներն՝ որ նոյն գծի վրայ եւ իրարմէ բարձր դիրք շինուած են, հարթաձեւ, յարդով ու աւազով խառն հասարակ շաղախէ յարկերով ծածկուած են (տես Տխտ. Ա. Զեւ 1) առանց պատուհանի։ Այս տներն այնու սանդղանման կ'երեւան, որ տան մը ետեւի պատն գրեթէ միշտ այնչափ բարձր կ'ըլլայ՝ որչափ է իւր կռնակի տան գաւիթը, որով եւ երբեք չի տեսնուիր։ Շինութիւններն բարձր դիրք երկրի վրայ իրարու վրայ կառուցանելն Ոսետաց քովն ալ գործածական կ'երեւայ։ (Հմմտ. Շվայկեր-Լերխենֆելտ, անդ էջ 357) "Ոսետաց բնակարաններն ալ որոշ առանձնայատկութիւն մ'ունին՝ մանաւանդ լեռնային տեղերը։ Քարաշէն, հարթայատակ հիւղերը լերանց ցից զառիվայրերուն այնպէս կպած են որ խոնարհագոյն դիրք ունեցող խղիկին յարկը՝ բարձրագոյին առջեւը սանդղի աստիճան մը կարծես կը կազմէ։ Նախկին խռովալից ժամանակներն ըն-

տանեաց բնակած անկերն որմով մը կ'ամրացընէին։ Որմը հաստատուն աշտարակ մը եւ հրացան արձակելու որմածակեր ալ կ'ունենար։»

Ծառ ու թուփ չգտնուելն ու փողոցներու նեղութիւնն, ծամածռութիւնն ու խորդուբորդութիւնն՝ այս ոճով կառուցեալ տանց միօրինակ եւ անհամ երեւոյթ մը կու տան։ Ասոր վրայ աւելցընելու է նաեւ ճամբաներու աղտեղութիւնն՝ ի մանաւորի գիւղին շրջակայքը։ Աստ անդ բրգաձեւ կը բարձրանան ահագին աղբակոյտք, որ իրենց հոտն ամէն կողմ կը տարածեն։ Առ հասարակ ամէն աղտեղութիւն՝ բայց ի մանաւորի այն տեղերը՝ ուր փայտի առատութեան պատճառաւ աթարն իբր վառելիք չի գործածուիր եւ մեծ բազմութեամբ աղբառ կը պահուի, գիւղին քովն նետուելով մեծ կոյտեր կը կազմէ, ժամանակաւ առաւել քան զառաւել կը մեծնան եւ երբեմն երբեմն սաստիկ անձրեւներով իրենց քանակութենէն քիչ մը բան կը կորսնցընեն։[1]

Հայաբնակ գաւառաց քանի մ'որթատունկ եւ բամբակ մշակող գիւղերն միայն՝ աղբն երկիրն արգաւանդ ընելու կը գործածեն, թէեւ առ հասարակ լաւ գիտեն անոր յարգն ու փոքրիկ բանջարանոցներու համար ալ կը գործածեն։ Ասոր պատճառը մասամբ ճանապարհաց յոռութիւնն է — սայլ գործածելն՝ ինչպէս յիշատակեցինք, լեռնական մասին մէջ տարածուած չըլլալուն՝ աղբն իշով կամ ձիով[2] հեռաւոր դաշտերն տանիլը գիւ-

---

[1] Այս տեղերն իբր ճեմիշ ալ կը գործածուին, վասն զի չկայ գիւղական տուն մը՝ որ այս մասն ունենայ։ Այս պարագան շատ մեծ դժուարութիւն կը պատճառէ օտարականի մը՝ մանաւանդ այն ատեն, երբ գիւղին կեդրոնը տեղ մ'իջած է եւ ստիպուած՝ անհանգարտ շանց մէջ այսպիսի տեղ մը փնտռել։ Շատ մանրավէպեր կը պատմուին այսպիսի դիպաց առթիւ։

[2] Առ Հայս բաց ի յիշուածներէն իբր բեռնակիր կենդանի կը գործածուի նաեւ ջորի։ Թաթարք առ այս

ղացւոց կարծեաց համաձայն հազիւ կրնայ ժամանակի կորուստն ու ծախքը փոխանակել, — եւ մնացածք ալ երկրին բարեբեր ըլլալն։ Երկիրը սեւ հող է եւ ըստ այսմ արօրելու ժամանակ կը նայուի որ ըստ կարի խորունկ ըլլայ ակօսը եւ առ այս երկու անուոյ վրայ հաստատուած մասնաւոր գործիք մը կը գործածեն, զոր գութան կ'անուանեն։ Գութանին վեց կամ ութ զոյգ եզ կամ գոմէշ կը լծեն եւ երկու կամ երեք հոգի պէտք է՝ որ ձեռքերնին երկայն գաւազաններով եւ լուծի վրայ նստած՝ լծեալները շարժեն։

Տարակոյս չկայ որ մաքրասիրութիւնը պէտք չէր թողուլ գիւղացւոյն՝ իւր բնակավայրին շրջակայքն այսպիսի բուրգեր կառուցանել. սակայն գիւղացին անասնոց հետ միշտ գործ ունենալուն՝ ամէն օր ու ամէն ժամ անոնց հետ զբաղելուն՝ այնպէս անոնց վարժած է որ հազիւ ի վիճակի է իրեն անհաճոյական կողմն ըմբռնել. եւ եթէ զինք մտադիր ալ ընես՝ ոչ դոյզն անգամ կը լսես. “Այս աղբին — կ'ուզէ ըսել՝ կովուն ու եզան — ղուրբան ըլլամ. ինքն է որ զիս եւ զաւակներս կը պահէ եւ չի թողուր որ բերանս ցամքի (այսինքն՝ եթէ կաթ, պանիր ու կարագ չունենամ՝ ցամաք հաց ուտելու կը ստիպուիմ), ինքն է՝ որ զիս օտարի առջեւ պարզերես կը հանէ. Թող Աստուած օրհնէ եւ բազմացընէ։„ Այս ու ասոր նման խօսքեր նահապետական մարդու մը տեսութիւնները կը պարզեն։ Այսպիսեաց համար անասունն ամենայն ինչ է, եւ մարդուն միտքը տարակոյս իսկ կու գայ թէ արդեօք ասոնք իրենց հոգեկան բարձրագոյն ձիրքն՝ իրենց անասունէ վեր ըլլալն գիտե՞ն։

Թէ Այրարատայ դաշտին գիւղերն իբր վաթ-

---

վախճան գոմէշ, ուղտ եւ կով ալ կը գործածեն։ Ուր որ սայլ կամ կառք գործածելու սովորութիւն կայ՝ սովորաբար գոմէշ կամ եզ կը լծեն, շատ քիչ անգամ ձի։ Էշ կամ ջորի լծել երբեք տեսած չեմ։

սուն տարի յառաջ եւս լաւագոյն չէին, յայտնի է Պառոտի (անդ, էջ 91) ստորագրութենէն:

«Այս գաւառին թէ՛ հայաբնակ եւ թէ՛ տաճկաբնակ գիւղերուն տեսքը՝ չի կրնար անոնց գրաւիչ զօրութիւն տալ: Կաւաշէն տանց յարկերն բոլորովին հարթ են եւ կաւով ծածկեալ: Պատուհանի տեղ կը ծառայեն քանի մը ծակ՝ որ ընդհանրապէս գաւիթ կը նային, ուր է եւ դուռը: Հողէ պատ մը կը շրջապատէ ամէն կալուած. եւ ամէն ուղղութեամբ ծուռումուռ ճամբաներով ծածկուած են այս կալուածոց մէջտեղն եղած միջոցները: Ըստ այսմ այս գիւղերը չունին այն գեղեցկութիւնն ու հրապոյրը՝ որ Եւրոպայի գիւղերուն յատուկ է, այլ մէկ ծայրէն մինչեւ միւս ծայրը, գետնէ մինչեւ առաստաղ միեւնոյն նիւթէ եւ միեւնոյն գունով են՝ ըստ ամենայնի նման հողոյ: Քիչ մը հեռուէն իսկ անկարելի է անոնց գիւղ ըլլալն իմանալ եւ արդեամբք ալ թերեւս շատ աւելի միտ չէր դրուեր, եթէ քանի մը ծառեր անոնց տեղը մատնանիշ չընէին:»

Հողէ պատ շինելու սովորութիւնն ուրիշ տեղեր ալ կը տեսնուի: Եղիսաբեթուպոլսոյ շրջակայքը պարտէզք հողէ պատերով շրջափակուած են. եւ զարմանալին այն է որ պատերը այնպիսի տեղեր եւս հողէ կը շինուին, ուր առատութեամբ քար կը գտնուի եւ շէնքի գործածելն շատ աւելի դիւրին է եւ նպաստաւոր: Կը յիշեմ թէ ինչպէս գիւղացի մ'ի Մեղրի՝ ուր ամենայն ինչ քարէ է, մեծ աշխատութեամբ իւր պտղոյ պարտէզը հողէ պատով մը շրջապատելու կ'աշխատէր՝ որ արեգական ջերմութենէն խորխոլելուն եւ անձրեւներէն ի բաց տարուելուն՝ անընդհատ նորոգութեան պէտք ունէր: Թերեւս կրնայ հաւանականութեամբ ընդունուիլ թէ այս եղանակաւ շինելն՝ որ խեցեգործութիւնը շատ կը յիշեցընէ, շէնք շինելու առաջին ու նախնական աստիճանն էր, որմէ յառաջ էր

սակայն գետնի մէջ ծակեր բանալն ու բնական այ-բերու մէջ բնակիլն ։ Որովհետեւ ստոյգ է թէ այսպիսի պատ մը շինելու համար շատ աւելի նուազ ճարտարութիւն ու արուեստ կը պահանջուի քան թէ քարերն ու գերաններն արուեստով իրարու վրայ դնելով յարմարցընելու ։

* * *

Ընդհանրապէս գիւղի մը մէջ ժամանակը հաճոյական եղանակաւ անցընելու եւ գիւղական կենաց ի մօտոյ ծանօթանալու ամէնէն յարմար ատենն է աշնան վերջը ։ Այս ժամանակն է միանգամայն համեմատաբար հեշտութեամբ եւ նոյն իսկ հաճոյիւք ճանապարհորդելու ամէնէն յարմարը ։ Տարւոյն միւս եղանակներն Սիւնեաց ու Արցախու մէջ ճանապարհորդելն այնպէս դժուարին, այնպէս խոնջեցուցիչ է որ թերեւս դժուարաւ գտնուի ուրիշ այսպիսի գաւառ մը ։ Գարնան կամ ամպ ու սաստիկ տեղատարափք զմարդ կը նեղեն սքընթաց հեղեղատներ կազմելով, որոնց մէջէն անցնիլ անկարելի է. սաստկաձայն դընդըչմամբ եւ անդիմադրելի զօրութեամբ քարեր ու ծառեր եւն յառաջ մղող ջուրը կարճ միջոցի մէջ կը ջախջախէ անհետ կ'ընէ ամէն խոչընդոտ, անապատ կը դարձընէ ծաղկող անդաստանները, կ'աւերէ ուղիները եւ շատ անգամ մարդ օրերով կը ստիպուի սպասել մինչեւ որ ճամբան շարունակել կարենայ. կամ ձիւնահալքէն ստուերացած բազմաթիւ լեռնագետակներն զինքը կը հարկադրեն, որ սպասէ ։ Ամառը խեղդիչ ջերմութիւն մը կը տիրէ որ անպատըսպար եւ կլիմային չվարժող հեծելոյն խնդութիւնն ու զուարճութիւնը կը բառնայ ։ Սակայն այս ամէնն ոչինչ է համեմատութեամբ այն նեղութեանց՝ զոր մարդ ստիպուած է ձմեռը կրել ։ Ճամբաներն բարձր լերանց վրայէն. կ'երթան, որ ամառն

անգամ թեթեւամիտ եւ նախահոգութեամբ չպատրաստեալ ուղեւորին իրենց ցրտագին զօրութիւնը զգալ կու տան. ուրեմն ցրտութիւնն որչափ եւս առաւել զգալի պիտի ըլլայ ձմեռը, երբ սաստիկ բուքը, ձեան հիւսերն, բուռն ու ցրտաշունչ հողմք ոչ դոյզն անգամ ամբողջ կարաւաններ ձեան տակ կը թաղեն. եւ շրջակայքն ոչ ուրեք բնակավայր մը կամ մարդու հետք մը կը տեսնուի, որ թշուառներուն կարենային ժամանակին օգնութեան հասնիլ: Բնութեան այս ամէն արհաւրաց վրայ աւելցնելու է եւ այն, որ շատ կողմեր գիշերելու պատշաճ տեղեր ալ չեն ըլլար: Կը սկսի մթննալ եւ մարդ տակաւին գիւղ մը հասած չ'ըլլար: Այս պարագան ամառը դժուարութիւն չունի, վասն զի մարդ կրնայ իւր ձիոյն քով բաց օդի մէջ գիշերել. միայն օդը լաւ չեղած ժամանակ փորձանօքերոյ անուանեալ շէնքերը կ'ապաւինին:

Քարվանսէրայի ամենապարզ մէկ տեսակը թաթարաբնակ գիւղի մը քով տեսած եմ եւ ձմեռը քանի մ'անգամ ալ մէջը քնացած: Քառանկիւն երկայն շէնք մըն էր, որուն երեք չորրորդական մասը ձիերը բռնած էին, մարդոց համար որոշեալ էր միւս մասը՝ որ դռնէն ամէնէն հեռուն է: Այս մասին մէջ է օճախը. ծխանի ու պատուհանի տեղ կը ծառայէր օճխի ճիշդ վրան բացուած ծակ մը (տես Ձեւ 2): Պատերը քարէ էին, յարկը՝ գերաններով, խռիւով եւ կաւով ծածկուած: Ամէն ուղեւոր անխտիր այս հասարակաց յարկին ներքեւ կ'իջեւանէր — որչափ կը յիշեմ երկու կամ երեք կարեկ վճարելով: Յայտնի է թէ այսպիսի այլազան տարրներէ կազմուած ընկերութեան մը մէջ մարդ մեծապէս զգոյշ ըլլալու է, եւ ընկերակիցներէն մին հարկ է որ ամբողջ գիշերը արթուն հսկէ:

Անգամ մ'իմ բախտակիցներուս մէջ ծերունի բանաստեղծ եւ աշուղ մըն ալ կար, որ ամբողջ գիշերը մեծ ոգեւորութեամբ եւ հաճոյական եղանա-

կաւ Շահնամէէն այլեւայլ կտորներ եւ առասպելախառն զրոյցներ կը պատմէր եւ այսպէսով գրեթէ մեզի մոռնալ կու տար մեր այդտեղ կենալը՝ որ ճշմարիտ տանջանք մըն էր։ Այդ բանաստեղծութեան հանդէպ՝ ստիպուած էինք անընդհատ խիստ անհաճոյ իրականութեան վրայ մտածել։ Գիւղացիք իրենց գրաստներն դարմանելէ ետեւ՝ կրակի քով նստելով սկսան իրենց հողաթափներն հանել՝ որ իրենց հոտովն բանաստեղծին գեղեցիկ վարդաստանները յիշեցընելէ շատ հեռու էին, եւ իրենց աղտեղի գուլպաներն չորցընելու համար կրակի առջեւ տարածել՝ բազմակիցներէն առանց ամենեւին նկատում ունենալու։ Սակայն շատ աւելի զզուելի տեսարան էր, երբ Թաթարներէն շատերը սկսան իրենց զգեստներէն զեռուններ փնտռել եւ հրոյ ճարակ մատուցանել։ (Հայք անոնցմէ այդչափ չեն նեղուիր, վասն զի ամէն շաբաթ իրենց զգեստները կը մաքրեն հետեւելով սովորութեան մը՝ որուն վրայ քիչ մ՚ետքը)։

Բարեբախտաբար հայաբնակ գիւղ մը հանելով մարդ դիւրաւ կը կազդուրի տարժանաւոր ուղեւորութեան խոնջեցուցիչ անհարթութիւններէն՝ պարզ, սակայն հիւրամեծար յարկի մը ներքեւ։ Առ մեզ հիւրասիրութիւնն գիւղացւոց մէջ ի զօրութեան է։ Ամէն օտար հիւր յօժարութեամբ կ՚ընդունուի, եւ մեր գիւղացին իր կենաց մէջ գործած ամենամեծ մեղքը կը համարի հիւր մը մերժած ըլլալը։

Ինչպէս որ Յունաց ու Հռովմայեցւոց քով օտարականը դից պաշտպանութեան ներքեւ կը համարուէր, այսպէս եւս մեր գիւղացւոյն համար օտարականն Աստուծոյ հիւրն (Աստծու ղոնաղ) է, եւ իր պարտքը կը համարի հիւրն իր տունն ընդունիլ եւ հիւրամեծարել։ Գիւղացիք առ հասարակ այն գիւղերու մէջ՝ ուր իրենց արմտիքն փոխանակելու եւ կամ ուրիշ գործոց համար երկայն ա-

տեն մնալու կը ստիպուին, որոշ ասպնջական մը կ'ունենան, որուն քով կ'իջնան։ Այդ ասպնջականը թողուլ եւ ուրիշի մը քով իջեւանել՝ լքելոյն համար ամենամեծ նախատինքն է, եւ լքողն եւս հասարակութենէ կը պարսաւուի եւ անոր դժկամակութիւնը կը զգայ։ Միայն այն ատեն հիւր մ'ուրիշ տուն մը կ'ընտրէ, երբ գիտէ թէ իւր ներկայութեամբն ձախողութեան հանդիպած ասպնջականին նեղութիւն պիտի պատճառէ, այսինքն երբ գիտէ թէ ասպնջականն աղքատացած է եւ ըստ հետեւորդի իւր նախկին հիւրէն պիտի ամչնայ ճոխութեամբ հիւրասիրել չկարենալուն համար. այս դէպքի մէջ փոքրիկ ընծայ մը կ'առաքէ ի նշան թէ զինքը մոռցած չէ եւ թէ զինքը կը յարգէ։ Սակայն այս զգուշաւոր բաժանումն ալ միշտ տժգոհութիւն յառաջ կը բերէ եւ շատ ցանցառ կը հանդիպի։

Հիւրամեծարութիւնը հօրմէն որդւոյն եւ յորդւոյ յորդիս միւս ժառանգութեանց պէս կ'երթայ. միայն թէ տան մէն մի չափահաս անդամը կարող է ուզածին պէս նոր ասպնջական մ'ընտրել. եւ ասկէ առեալ շատ անգամ կը պատահի որ երբ զոր օր. երկու եղբարք ի միասին գիւղ մը կուգան՝ այլեւայլ ընտանեաց քով կ'իջեւանին։ Ժամանակաւ ասպնջականութեան յարաբերութիւնն այնպիսի կ'ըլլայ որ երկու ասպնջականք իրարու հետ սերտ կապուելով՝ մերձաւոր ազգականի եւ ասպնջականի մէջ հազիւ խտրութիւն կ'ընեն։ Կարօտութեան ժամանակ կարողութեան տէր ասպընջականը մերձաւոր ազգականի մը պէս օգնութեան կը կոչուի։ Եթէ վաճառելու կամ փոխանակելու բան մ'ունենան, իրարու լուր կու տան թէ արդեօք անոնցմէ բանի մը պէտք ունի՞ն։ Նոյն իսկ ուրեք երբեք գիւղացի մ'իւր վտանգաւը վաճառքներ կը գնէ իւր ասպնջականին համար, որոնց կ'ենթադրէ թէ կարօտութիւն ունի։ Սարեցին իւր դաշտավայրերը բնակող ասպնջականին համար իւր

բերքէն՝ կարագ, պանիր, ցորեն եւն մէկ կողմ կը դնէ, մինչդեռ ջերմագոյն նահանգները բնակողն՝ ագանոցին՝ տարեւցոյն համար պտուղ, որիզ, բամբակ, մետաքս, գինի եւն կը պահէ։ Հասարակօրէն փոխադարձաբար իրարու այց եկած ժամանակ՝ մերայինչեաններէն փոքրիկ ընծաներ իրենց հետ կ'առնուն կամ կ'առաքեն։ Մարդ գիւղացւոյն թամբին վրայ փոքրիկ ծրարներ ու պարկեր զետեղուած երբ տեսնէ, կրնայ ապահով ըլլալ որ պարգեւտալու սահմանուած են։

Երկու ասպնջականաց իրարու ծանօթանալն ամենեւին նախընթաց ձեւակերպութիւններ չունի. երբ մէկն մէկ կամ երկու անգամ տուն մը կ'իջնայ, երկուքին մէջ միանգամ ընդ միշտ ասպնջականութիւնը հաստատուած է։ Մէկն գիւղ մը գալով՝ այս կամ այն գիւղացին կը հրաւիրէ գիւղ եկած ժամանակ իւր քովն իջնալու. ուղեկիցն իւր տունը տանիլ սովորութիւն է. եթէ մէկն դաշտէն դարձած ժամանակ պատահմամբ օտարականի մը գիւղ մտնելն տեսնէ եւ գիտնայ որ ասպնջական չունի՝ իւր քովն կը հրաւիրէ. վերջապէս եթէ օտարական մ'իջեւանելու տեղ չգտնէ, ուղղակի եկեղեցի կ'երթայ, ուր քահանան կամ գիւղացի մը զինքը ապահովապէս կը հրաւիրէ։ Մի անգամ տեսնելն ապագայ բարեկամութեան հիմը կը կազմէ։

Այն ատեն միայն բացառութիւն մը կ'ըլլայ, երբ հիւրն ազնուական քաղաքացի կամ բոլորովին օտարական մըն է, որ մի անգամ եւեթ գիւղ մ'իջնալու ստիպուած է եւ ըստ այսմ տեւական ասպընջականութեան տեղի չկայ։ Այսպիսի դիպաց մէջ եթէ օտարականն յանձնարարական չունի՝ տուն մ'իջնալու, իրեն պատահող առաջին գիւղացին զինքը գիւղապետին կամ քահանային տունը կ'առաջնորդէ։

Սովորաբար գիւղին ամենէն ունեւորներն են այս երկուքն եւ օտարականներն՝ մանաւանդ քիչ

մը հարուստներն ընդունելու դիւրութիւն ունին։ Բայց ատեն կը պատահի որ գիւղի մէջ բազմանդամ եւ հարուստ ընտանիք մը հիւր ունենալ շատ կը սիրէ. այն ատեն հիւրերը հոն կ'առաքուին. կամ այսպիսի ընտանեաց անունն ամէն կողմ ծանօթ ըլլալով՝ օտարական մ'արդէն ուրիշ գիւղ մ'եղած ժամանակէն գիտէ եւ այդտեղ հասնելով այն ընտանեաց բնակարանը կը տեղեկանայ եւ հիւրասէր ասպնջականին դրան առջեւ զկայ կ'առնու։ Տան երիցագոյնը զինքը յօժարութեամբ կ'ընդունի, հիւրանոց կ'առաջնորդէ եւ ծառայից եւ կրտսերագոյն անեցւոց հիւրին ձին դարմանելու, կերակուր պատրաստելու, սենեակը յարդարելու եւն այլեւայլ պատուէրներ կու տայ։ Օրինակի համար տուն մը գիտեմ, ուր երբեմն տասը կամ աւելի օտարական կերակրոյ կը նստէր եւ առանց հիւրի օր չէր ըլլար. եթէ դիպուածով հիւր չըլլար, այն ատեն ընտանեաց մեծը դրացիներէն մին կերակրոյ կը հրաւիրէ՛ր, ապա թէ ոչ “բանի մ'ալ համը չէր առնուր, առանց հիւրի պատառ մ'ալ կոկորդէն վար չէր երթար. Ի՞նչպէս կրնար Աստուծոյ պարգեւին առանձինն վայելել։„

Գոհ կ'ըլլար, եթէ կարենար իր ամէն հիւրերն առանց դրացիներէն բան մը խնդրել ստիպուելու մեծարել եւ անկողնոյ կազմածն հոգալ։ Այս վախճանաւ ամէն տան մէջ՝ բնականաբար իւրաքանչիւրին կարողութեան համաձայն անկողնոյ այսչափ կամ այնչափ կազմած կը գտնուի. գորգ (գաւառական ճօճօ), կապերտ (գւռ. ճարդեր) — գորգի նման բրդէ շինուած է գունաւոր թելերէ, սակայն անոր կարճ ու փափուկ ստեւը չունի —, բրդալիր անկողին, բարձ եւ վերմակ՝ նոյնպէս բրդով լեցուած։ Երկու վերջինք ամէնէն գեղեցիկներն են, վասն զի առ հասարակ բարձք մետաքսով գործուած նիւթերով, իսկ վերմակք կամ իրենց գործած եւ կամ գնուած մետաքսեղէններով պատուած կ'ըլ-

լան։ Զասոնք խնամով կը պահեն եւ հիւրերու եւեթ կը գործածեն. իսկ տնեցւոց գործածածն են պարզ բամբակեղէնք՝ զոր իրենք գործած են։

Ի նկատի առնլով մեր գիւղացւոց յարաբերութիւններն եւ կենաց պայմաններն՝ զոր յառաջ բերինք, այսպիսի տարածեալ ասպնջականութիւն մը դիւրաւ կը հասկըցուի եւ կը տեսնուի, թէ փոխադարձաբար իրարու օգնելու հետեւութիւնն է։ Հաղորդակցութեանց նախնական վիճակին եւ քաղաքակրթութեան ծաւալած չըլլալուն պատճառաւ՝ վաճառականութեան եւ բարձրագոյն ճարտարագործական արուեստից մասին խօսք չի կրնար ըլլալ։ Գիւղացին իւր բերքերուն իրեն հարկաւոր եղածէն աւելին չի կրնար վաճառել եւ եթէ վաճառէ ալ՝ այնպէս աննշանակ գին կու տան որ փոխադրութեան պատճառած աշխատութենէն զերծ մնալն լաւագոյն կը համարի։ Փոխանակութեամբ մերձակայ գիւղերէն այն կ'առնու, ինչ բանի որ պէտք ունի։ Այս պատճառաւ արծաթսիրութիւնն գիւղացւոյն բոլորովին անծանօթ է։ Եթէ դրամ ունենայ չի գիտեր թէ ինչ բանի գործածէ. եւ դրամն արծաթ րուբլին փոխելով կաւէ անօթներու մէջ զետեղելով՝ կը թաղէ։ Յօժարութեամբ եւ առատութեամբ կու տայ Աստուծոյ իրեն այնպէս յորդութեամբ պարգեւածէն, ապա թէ ոչ Աստուած զինքը կը պատժէ։ Քաղաքներէ հեռու գիւղերու մէջ հաց, կաթ եւն ծախելն մեղք կը համարին, այնպէս որ դաշտը բերք չի բերեր, կովը կաթ չի տար։

Գիւղերու մէջ ամենեւին գինետուն չկայ. բայց դժբախտաբար այժմ գինետուն բանալու յոռի սովորութիւնը մուտք կը գործէ։

Օտարականը մէկ օր կամ աւելի ալ մնայ, միշտ նոյն յարգութիւնն ու մեծարանքը կը վայելէ։ Օտարականը բնակութեան համար բան մ'ալ չի վճարեր, բայց եթէ այն՝ ինչ որ ինքն առանձինն

իրեն համար կը գնէ, զ. օ. եթէ միշտ ոչխարենի կամ հաւեղէն ուզէ ուտել կամ այն գիւղերու մէջ՝ ուր գինւոյ մշակութիւն չկայ, գինի խմել ուզէ՝ այն ժամանակ վճարելու է։

Հարուստ հիւր մը սովորաբար երթալու ժամանակ իւր կողմանէ փոքրիկ նուէր մը կ'ընէ եւ այն՝ տանտիրոջ, եթէ երկայն ատեն հիւր մնացած է, կամ փոքրիկ գումար մը տան կրտսեր անդամներէն միոյն, որ իրեն համար ամէնէն աւելի աշխատած է։

Թէ այս սովորոյթք յայլ գաւառս ալ կան, կ'ուզեմ հաստատել Շիմանի՝ Դր. Պառոտի վերն ի վկայութիւն կոչուած (Reise zum Ararat, էջ 189) մատենին մէջ տուած տեղեկութիւնն յառաջ բերելով.

"Իրիկունը Թաշպուրնու անուն հայաբնակ մեծ աւանն հասանք։ Որոշեցինք այստեղ գիշերել, վասն զի մեր կողակն ըսաւ թէ մերձաւոր գիւղն այնչափ հեռու է որ չմթնցած հասնիլ անկարելի է։ Աղան (այսպէս կը կոչեն Հայք գիւղին ամէնէն երէցը,) կոչել տալով գիշերն անցընելու տեղ, ձիոց համար խար, քիչ մը պտուղ՝ սեխ ու մաթուզ (arbouse) խնդրեցինք։ Մեր խնդիրքն կատարել խոստացաւ։ Մեր թէյը խմելէն ետքը Աղան միւս անգամ մեզի գալով՝ սեխ ու մաթուզ բերաւ եւ մեզի հետ խօսակցեցաւ թարգմանի միջնորդութեամբ։ Այս միջոցին գետինը գեղեցիկ գորգ մը տարածեցին եւ վրան բազմաթիւ սկաւառակներ դրին, որոնց մէջ այլեւայլ կերպով պատրաստուած հաւեղէն ու բրինձ կար։ Մեր հիւրասէր ասպնջականը զմեզ ուտելու կը ստիպէր. մենք ըսինք թէ անօթի չենք եւ կերակուր չխնդրեցինք։ Պատասխանեց թէ մենք այնպիսի հաճոյական ու հաղուադէպ հիւր ենք, որ ձեռքէն եկածն պիտի ջանայ ընել՝ սոյնը մեզ ցուցընելու եւ թէ կը վշտանայ եթէ մերժենք։ Ուստի մերձեցանք գորգին եւ մեր

տապնջականը զարմանալով կը նայէր մեր բրինձը դդալով ուտելուն, վասն զի դդալն այն կողմերն անծանօթ[1] է եւ ասոր տեղը կը բանեն մատունք։ Կերակուր ուտելէն վերջը քանի մը գորգ ալ բերուեցաւ եւ մեզի լաւ անկողին մը պատրաստեցինք՝ որչափ պարագայք կը ներէին։

“Երկրորդ առաւօտ աղան միւսանգամ կոչել տուինք եւ հարցուցինք թէ ձիոց խարին եւն համար որչափ պարտական ենք։ Մեր հարցումն զինքը վշտացուց։ Իւր պատասխանն էր թէ իրեն համար պատիւ մըն է որ իւր քովն իջանք եւ իւր յարկին ներքեւ բնակեցանք եւ թէ ետ դառնալու ժամանակ ալ իրեն քովն իջնանք։ Շնորհակալ եղանք իրեն այդ մարդասէր ընդունելութեան համար։„

Ապա յէջն 190 կը գրուի. “Կէսօրը Ախմամէթ անուն թաթարաբնակ գիւղն զկայ առինք եւ Եէօզ-Բօշըյինի[2] գացինք, որ զմեզ պաղութեամբ ընդունեցաւ եւ հազիւ ողջունեց։ Մեր ձիոց համար խոտ ուզեցինք՝ բնականաբար վճարմամբ, զոր մեծ դժուարութեամբ ստացանք։ Սակաւ ժամանակի մէջ Թաթարաց բազմութիւն մը մեր բոլորտիքը ժողուեցաւ եւ սկսաւ զմեզ հետաքրքրութեամբ չափել....։ Մեկնելու միջոցին հարցուցինք թէ ինչ պիտի վճարենք։ Եիւզբաշին քանի մ'աբաս (մէկ աբաս = 80 կոբէկ, իսկ այժմ = 20 կոբ.) պահանջեց։ Պր. Բէթագէլ վճարեց։

Այդտեղ խռնեալ բազմութենէ քանի մը Թաթարներ շուտ մ'Եիւզ-բաշըյին մերձեցան եւ սաստկութեամբ անոր հետ խօսակցիլ սկսան։ Եիւզ-Բաշին քիչ մ'ետքը մեզ մերձեցաւ, երբ մեր ձիերը կը պատրաստէինք, եւ խոնարհութեամբ կը խնդրէր որ դրամն ետ առնունք։ Մենք բացարձա-

---

[1] Զափազանցութիւն է. դդալն առ մեզ ծանօթ է եւ այն՝ շատ հին ժամանակներէ. միայն թէ կերակրոյ՝ եւս առաւել փիլաւի՝ ստորագրեալ կերակրոյն չի գործածուիր։

[2] Եէօզ-Բօշը = Հարիւրապետ։

կապէս չէինք ուզեր ետ առնուլ, առարկելով թէ իւր արդարացի պահանջն է եւ ըստ այսմ կրնայ պահել: Բայց երբ միւս Թաթարք եւս իրենց աղաչանքն անոր աղաչանաց հետ միացուցին, ստիպուեցանք դրամն ետ առնուլ:»

Թէ մեր նախնիք եւս սոյն այս գովելի սովորութիւնն նոյն ընդարձակութեամբ ի գործ կը դնէին, կը վկայէ Քսենոփոն. Հայ գիւղական տանց վրայ շատ հետաքրքրական քանի մը տեղեկութիւն տուած տեղը՝ մասնաւոր եղանակաւ հիւրասիրութեան մասին կ'ըսէ (Արշաւանք Դ, 5, 30).

«Եւ յամենայն շէնս, յորոց անցանէր, երթայր նախ առ զօրս՝ որք անդն բնակէին. եւ ամենայն ուրեք ուրախս եւ զուարթացեալս գտանէր. որք ոչ թողուին զնոսա առանց նախաճաշ ինչ նոցա մատուցանելոյ. չգոյր տեղի ուր ոչ գտանէր ի սեղանս միս ոչխարաց եւ ուլուց, խոզենի, միս հորթուց եւ հաւուց՝ հանդերձ բազում հացիւ կորեկան եւ գարւոյ: Յորժամ ոք առ սիրոյ կամէր տալ ումեք ըմպել, ձգէր զնա ի տաշտն, եւ անդ հարկ էր խոնարհեալ ըմպել ձգելով որպէս զկով:»

Թերեւս աւելորդ չէ այս գլխոյն վերջը հիւրամեծարութեան մի ուրիշ սովորոյթն ալ՝ — հիւրին ոտքը լուալու սովորութիւնը կ'ուզեմ ըսել, — յիշատակել: Այս մասնաւոր պատիւն ի վաղուց ծանօթ հիւրերու եւեթ կ'ընծայուի: Երբ այսպիսի բարեկամ մը հասնի, տան ամէնէն մանկամարդ կինը (Նուզա Հարսը) կամ հասունացած աղջիկն՝ եռոտանիին վառեալ օճախին մէջտեղ կը դնէ եւ կաթսայով մը ջուր կը ջեռուցանէ: Ջրոյն տաքցած միջոցին տաշտ մը (Զեւ 3) կը բերէ, ծանկեալ երեսով հիւրին կը մերձենայ եւ ձեռքերն կրծոց վրայ խաչաձեւ բռնած՝ խոնարհելով մը կ'ողջունէ եւ նշանացի կը հասկըցընէ — որովհետեւ օտար հիւրի մը հետ չի կրնար խօսիլ, — որ թոյլտուութիւն կը խնդրէ ոտքերը լուալու: Աղ-

ջիկն աւելի ազատ է. քանի որ հարս չէ՝ ծածկեալ երեսով չի շրջիր, այլ գլուխը փոքրիկ քօղ մ'ունի եւ ամէնուն հետ բաց երեսով կրնայ խօսիլ, սակայն ինքն ալ մանկամարդ կնոջ վիճակին վիճակակից կ'ըլլայ այն օրն իսկ, յորում կը նշանուի: Հիւրն ինք զինքը պարտաւոր կը համարի այդ հաճոյական խնդիրքը շատ անգամ մերժել մինչեւ որ տանտէրը կամ տանտիկինը զինքը յայն ստիպէ:

Ոտքը մին միւսին ետեւէն կ'երկընցընէ եւ մանկամարդ կինը ղօրչէխը կը հանէ, որ կազմուած է նախ բրդախառն մետաքսէ կամ միայն բրդէ հիւսեալ չորս մատ լայն կապէ մը (— Հայերէն թաթարերէնէ փոխառեալ բառով մը դօլաղ) — որ զանկապանին եւ վարտեաց ծայրերուն վրայ շատ անգամ փաթթուած է. այս ագանելիքն ուղեւորին մեծ հանգստութիւն կը պատճառէ: Երկրորդ ղօրչէխէն՝ որ հաւանականագոյնս թաթարերէն բառ մըն է, վասն զի Թաթարք զասի ղօրչէխ(چارغ) կ'անուանեն, որ ուրիշ բան չէ բայց եթէ կտոր մը խոզի, եզան կամ գոմշու կաշի: Շատ կը խնդրուի խոզի կաշին, վասն զի միշտ փափուկ կը մնայ եւ շատ կը դիմանայ, մինչդեռ այլ կաշիք շուտով կը չորնան եւ ոտքը կը սեղմեն: Երրորդ զանկապանէ՝ որ բամբակեայ գունաւոր դերձանէ հիւսուած կ'ըլլայ՝ գեղեցիկ զարդերով՝ յար եւ նման արեւելեան գորգերու զարդուց:

Այսպիսի ագանելիք մը յօրինել շատ դիւրին է եւ շատ պարզ. ամէն գիւղացի ինքն իրեն կը շինէ: Կաշին կ'առնուն, մազերը կ'ածիլեն, մերկ ոտքը՝ մեծութիւնը չափելու համար կաշւոյն վրայ կը դնեն եւ նոյն մեծութեամբ կաշին կը կտրեն: Կաշւոյ կտորուանքները դերձանի պէս բարակ կըտրելով՝ տրեխին եզերքներն օղեր շինելու կը գործածեն, որոնց մէջէն յետոյ մետաքսեայ կամ բրդէ գոյնզգոյն լայն կապ մը կ'անցընեն, որ ղօրչէխին ոտքէն ելլելը կ'արգելու: 2 եւ 4 նկարեալ ղօրչէխը

մեր առջեւ կը դնէ, որ քանի մը ժամուան մէջ կրնայ յօրինուիլ։ Զուլըխն ամենայն մասամբ դիւրատար եւ հաճոյական ագանելիք մըն է։ Մի միայն պակասութիւնն է երկայն չդիմանալը։

Ոտնլուայէն ետքը՝ որմէ յառաջ արդէն ոտքը շփուած էր, հիւրն ըստ կամս դրամ մը կը դնէ կնոջ ձեռքը՝ որ ձեռնահամբուրով մ'իւր շնորհակալութիւնը կը յայտնէ։ Ամէն հիւր այս նուէրը չ'ըներ։

Իմ կամքս չէ այստեղ յիշատակել Հայոց այն ամէն նշանաւոր սովորութիւններն, որոնց շատն ապահով հին ժամանակներէն են. այլ ուզեցի համառօտիւք միայն այն տպաւորութիւններն ուրուագրել, զոր օտարական մը հայկական այսպիսի գիւղի մերձեցած ժամանակ եւ գիւղի մէջ կ'ունենայ։ Ուրեմն հասանք գիւղ, մտանք տուն. արդ ստորագրենք այժմ տունն ըստ կարի ճիշդ։

Արդէն ըսի թէ յօդուածս ի Վիեննա գրելով՝ թերութիւններ պիտի ունենայ եւ այժմ կ'ուզեմ աւելցընել թէ թերեւս թերութեանց ամէնէն գլխաւորներն են թուոց պակասութիւնն եւ մեծութեան նշանակուած չըլլալն։ Տանց յատակագիծներուն եւ միւս ձեւերուն մեծութիւնը չկրցայ թուով նշանակել, որով կարելի կ'ըլլար առարկայից ճշգրիտ մեծութիւնը պատկերացընել։

---

## Բ.

### Հայ գիւղական տունն եւ կազմութիւնը։

Տեղեկութեանցս եւ անձնական ծանօթութեանս հետեւելով՝ հայ դիւղական տները գլխաւորաբար երեք կարգի կ'ուզեմ բաժնել։

1. Գաւթով տուն՝ որուն ճակատը բոլորովին բաց է եւ զոր օրահ կ'անուանեն։ Օդն լաւ եղած ժամանակ մարդիկ ու կենդանիք այստեղ կը կենան։

2. Առանց գաւթի տուն, եւ

3. տուն մը՝ որ հաւանականագոյնս օտարաց ազդեցութեամբը նախ եւ յառաջ քաղաքաց մէջ գործածական ըլլալով՝ քաղաքներէն տակաւ տակաւ գիւղերու մէջ տարածուած է, եւ այժմ՝ կամաց կամաց միւս տեսակներն խափանելով ընդհանուր գործածականն ըլլալ կը թուի։ Այս տունը պատահան ունի եւ գաւթի կամ սրահի տեղ՝ պատշգամ, որուն վրան ծածկուած է եւ սրահին մատուցած ծառայութիւնը կը մատուցանէ՝ սա տարբերութեամբ միայն որ անասունք այդտեղ այլ եւս բաժին չունին։

Առաջին երկու տեսակաց յատուկ է լոյսը երդիքէն առնուլ, որ եւ ծխանի պաշտօնը կը կատարէ, վասն զի ծուխը դուրս ելլելու ասկէ զատ ուրիշ ծակ չունի։ Կրակ վառելու տեղն է բնակարանին միջավայրը, պատերն արտաքուստ ողորկ են եւ ամենեւին ծակ չունին։

Կրակ այլեւայլ եղանակաւ կը վառեն. կամ տան միջավայրը բաց տեղ մը — ինչպէս ետքէն պիտի ցուցընենք՝ այս կերպը ծխանը գտնելու պատճառ եղած է, — եւ կամ գետնի խորունկ ծակի մը մէջ՝ ուր օդն գետնի տակ բացուած շեղ ճամբէ մը՝ ակուկայէ՝ գալով կրակը կ'արծարծէ. ակուկայի բերանը պատին տակ կամ դրան քովն կ'ըլլայ։ Երբ վառելիքը ծակին մէջ ածուխ կը դառնայ, ակուկայի բերանը կը ծածկեն եւ ածուխն անբոց վառելով ամէն կողմ ջերմութիւնը կը տարածէ. կամ կրակը թոնրոջ անուանեալ գործիքով մը կը ծածկեն, որուն ընդ հուպ ի մերձուստ կը ծանօթանանք։

Իմ գիտցածիս համեմատ ամէնէն աւելի ստորագրած նահանգացս՝ Արցախու ու Սիւնեաց՝ մէջ երահաւոր տունը սովորական է, եւ հաւանականագոյնս իւր ձեւովն շատ աւելի հին է քան երկրորդ

կարգի տունը։ Այս տան անհրաժեշտ մասունքներն են։

1. Սրահ[1] = գաւիթ կամ ճշդագոյնս ամառնային տուն, զոր Հայք Էյվան ալ կոչեն։ Որչափ կը յիշեմ այս վերջին անունն ի Մեղրի՝ Երասխայ ափանց վրայ լսեցի։

2. Սրահի մէջ ցանգով կամ բարձրադիր շինութեամբ անջատուած ֆօտրէկ մաս մը՝ որ զմարդիկ սրահի մէջ կեցող կենդանիներէ բաժնելու կը ծառայէ։ Բնակիչք այստեղ իրենց կերակուր ու հաց կը պատրաստեն։ Ամէն տուն այս բաժինը չունի։

3. Բուն օտանը՝ զոր բազմաթիւ գաւառք օտան կը կոչեն փոխանակ մատենագրական օտան բառին, եւ միայն Արցախու եւ այն՝ Շուշւոյ արեւելեան-հարաւային կողման գիւղերն ղարադամ՝ բառ առ բառ սէ-տուն՝ կը յորջորջեն։ Տօնէ կամ ղարադամի մէջն է ամենայն ինչ. բնակարան, օճախ, մառան, հնոց, ննջասենեակ, ճաշարան եւ նստելու խուցը։ Ձքաւոր ընտանեաց քով օտարական հիւրն ալ հոն կը տեղաւորուի. ունեւոր ընտանիք մասնաւոր հիւրանոց կ'ունենան։ Այս մասն է ձմեռնային տունը։

4. Փօտրէկ խուց մը՝ որ տան յետսակողման պատին կից է։ Այս խուցն այնպէս շինուած է, որ սովորաբար ոչ դրսէն եւ ոչ ներսէն կը տեսնուի, բայց եթէ փոքրիկ դուռն՝ որ պատերուն նման սպիտակ բռուած կ'ըլլայ։ Այս խուցն է բուն մառանը, զոր սակայն ամէն տուն չ'ունենար։ Անունն է՝ Նէրօէ օճախ կամ ներքին խուց։

5. Ախոռ՝ որ կամ ղարադամի կից կ'ըլլայ եւ կամ՝ գլխաւորաբար տեղւոյ աղութեան պատճառաւ՝

---

[1] Հայերէն սրահ բառը՝ պարսիկ օէրրային շատ նման կը հնչէ. բայց թէ իրարու հետ առնչութիւն ունին, չեմ կրնար որոշ ըսել։ Էյվան ապահով պարսկերէնէ փոխառեալ բառ մըն է։

2. Առանց գաւթի տուն, եւ

3. տուն մը՝ որ հաւանականագոյնս օտարաց ազդեցութեամբը նախ եւ յառաջ քաղաքաց մէջ գործածական ըլլալով՝ քաղաքներէն տակաւ տակաւ գիւղերու մէջ տարածուած է, եւ այժմ՝ կամաց կամաց միւս տեսակներն խափանելով ընդհանուր գործածականն ըլլալ կը թուի։ Այս տունը պատահան ունի եւ գաւթի կամ սրահի տեղ՝ պատշգամ, որուն վրան ծածկուած է եւ սրահին մատուցած ծառայութիւնը կը մատուցանէ՝ սա տարբերութեամբ միայն որ անասունք այդտեղ այլ եւս բաժին չունին։

Առաջին երկու տեսակաց յատուկ է լոյսը երդիքէն առնուլ, որ եւ ծխանի պաշտօնը կը կատարէ, վասն զի ծուխը դուրս ելլելու ասկէ զատ ուրիշ ծակ չունի։ Կրակ վառելու տեղն է բնակարանին միջավայրը, պատերն արտաքուստ ողորկ են եւ ամենեւին ծակ չունին։

Կրակ այլեւայլ եղանակաւ կը վառեն. կամ տան միջավայրը բաց տեղ մը — ինչպէս ետքէն պիտի ցուցընենք՝ այս կերպը ծխանը գտնելու պատճառ եղած է, — եւ կամ գետնի խորունկ ծակի մը մէջ՝ ուր օդն գետնի տակ բացուած շեղ ճամբէ մը՝ ակուկայէ՝ գալով կրակը կ՚արծարծէ. ակուկայի բերանը պատին տակ կամ դրան քովն կ՚ըլլայ։ Երբ վառելիքը ծակին մէջ ածուխ կը դառնայ, ակուկայի բերանը կը ծածկեն եւ ածուխին անբոց վառելով ամէն կողմ ջերմութիւնը կը տարածէ. կամ կրակը փուրոփ անուանեալ գործիքով մը կը ծածկեն, որուն ընդ հուպ ի մերձուստ կը ծանօթանանք։

Իմ գիտցածիս համեմատ ամէնէն աւելի ստորագրած նահանգաց՝ Արցախու ու Սիւնեաց՝ մէջ սրահաւոր տունը սովորական է, եւ հաւանականագոյնս իւր ձեւովն շատ աւելի հին է քան երկրորդ

կարգի տունը։ Այս տան անհրաժեշտ մասունքներն են։

1. Սրահ[1] = գաւիթ կամ ճշգագոյնս ամառնային տուն, զոր Հայք Էյվան ալ կոչեն։ Որչափ կը յիշեմ այս վերջին անունն ի Մեղրի՝ Երասխայ ափանց վրայ լսեցի։

2. Սրահի մէջ ցանգով կամ բարձրադիր շինութեամբ անջատուած փոքրիկ մաս մը՝ որ զմարդիկ սրահի մէջ կեցող կենդանիներէ բաժնելու կը ծառայէ։ Բնակիչք այստեղ իրենց կերակուր ու հաց կը պատրաստեն։ Ամէն տուն այս բաժինը չունի։

3. Բուն տունը՝ զոր բազմաթիւ գաւառք տուն կը կոչեն փոփանակ մատենագրական տուն բառին, եւ միայն Արցախու եւ այն՝ Շուշւոյ արեւելեան-հարաւային կողման գիւղերն ղորղոմ՝ բառ առ. բառ ներսատուն՝ կը յորջորջեն։ Տունի կամ ղորղոմի մէջն է ամենայն ինչ. բնակարան, օճախ, մառան, հնոց, ննջասենեակ, ճաշարան եւ նստելու խուցը։ Ձքաւոր ընտանեաց քով օտարական հիւրն ալ հոն կը տեղաւորուի. ունեւոր ընտանիք մասնաւոր հիւրանոց կ'ունենան։ Այս մասն է ձմեռնային տունը։

4. Փոքրիկ խուց մը՝ որ տան յետսակողման պատին կից է։ Այս խուցն այնպէս շինուած է, որ սովորաբար ոչ դրսէն եւ ոչ ներսէն կը տեսնուի, բայց եթէ փոքրիկ դուռն՝ որ պատերուն նման սպիտակ բռուած կ'ըլլայ։ Այս խուցն է բուն մառանը, զոր սակայն ամէն տուն չ'ունենար։ Անունն է՝ Ներքի օճախ կամ ներքին խուց։

5. Ախոռ՝ որ կամ ղորղոմի կից կ'ըլլայ եւ կամ՝ գլխաւորաբար տեղւոյ ողութեան պատճառաւ՝

---

[1] Հայերէն սրահ բառը՝ պարսիկ սէրային շատ նման կը հնչէ. բայց թէ իրարու հետ առնչութիւն ունին, չեմ կրնար որոշ ըսել։ Էյվան ապահով պարսկերէնէ փոխառեալ բառ մըն է։

անկէ բաժնուած։ Երբ հայրը կը վախճանի եւ իւր ամուսնացեալ որդիքն հայրենի ստացուածքը բաժնելով իրարմէ կը բաժնուին, առ հասարակ երէց որդին բուն տունն իրեն կը պահէ, իսկ կրտսերը նախկին հասարակաց ախոռը բնակարանի կը փոխէ այսինքն՝ անասնոց համար նոր ախոռ մը կը կառուցուի, վասն զի ախոռն տնէն քիչ մը հեռու ալ կրնայ ըլլալ, մինչդեռ գեղացին շատ դժուարաւ կրնայ հայրենի օճախէն հեռանալով քիչ մը հեռուն նոր բնակարան մը հաստատելու որոշում տալ։ Այս պատճառաւ տունը բաժնելու առեն ոչ դոյզն անգամ կագ ու կռիւ կը ծագի։ Մեր գիւղացւոց ըմբռնման համաձայն՝ տան երջանկութիւնն օճախէն հետ անձկագոյնս կապուած է. աւելի սիրով կը բնակի ախոռին մէջ՝ նոյնը բնակարանի փոխելով, որով՝ եթէ օճախը չի կրնար ունենալ, գոնեայ անոր շատ մօտ կը գտնուի։

6. Մարագ՝ (համբարանոց) որ ինչ ինչ գիւղերու մէջ տան քովն կ'ըլլայ. ապա թէ ոչ՝ գիւղին շրջակայքը։ Ասոր պատճառը վերջէն պիտի տեսնենք։

7. Վերն արդէն յիշեալ Հէ-րանոցն (մատենագրական լեզուաւ «էնէա»՝ զոր սակայն ժողովրդեան բերանն սովորական եղած՝ պարսկերէնէ փոխառեալ օճախ բառն խափանած է)։ Ամբողջ գիւղին մէջէն քանի մ'ընտանիք եւեթ կ'ունենան այս սենեակն, այսպէս 10—15 տնէն թերեւս հազիւ մին՝ տան կից կամ անկէ բաժանեալ։

Այս եօթն մասունք գիւղական մեծ ու կատարեալ տուն մը կը կազմեն. բայց գիւղական տուն մը կրնայ միայն երկու մասէ՝ սրահէ ու ղարաղամէ բաղկանալ. արդեամբք ալ այսպիսի տներ կը գտնուին։

Գիւղացին իւր կովերուն, ոչխարներուն եւն արօտ գտնելու համար ստիպուած է անոնց հետ չորս կողմն շրջիլ. ասոր համար ամէն գիւղ ունի

իւր ամառուան տեղն — սար (որ ըստ ինքեան լեռ ըսել է, ըստ որում զով, մաքուր օդ միայն լեռները կը գտնուի,) եւ ձմեռուան տեղն — տրան¹։ Գիւղացին սարը կամ վրան կը կանգնէ եւ կամ սրահի ձեւով միայուն շէնք մը կ'ունենայ, որ ձմեռը չի գործածուիր. արանն ալ ախոռ մը՝ ուր մարդիկ ու անասունք նոյն յարկին ներքեւ ի միասին կը բնակին. այս ախոռն ամառը դատարկ կը մնայ։ Այստեղ երկրորդ մարագ մ'ալ կը շինուի՝ ինչպէս գիւղն։ Այս երկուքն գիւղական տան մ'էական նախամասունքն են։

* *
*

Անցնելով այժմ տան մէն մի կազմիչ մասանց՝ Ձեւ 5ի մէջ Հղորդի գիւղէն տան մը յատակագիծը կը գտնենք, որ Շուշւոյ հարաւակողմը Վարանդ նահանգին մէջ կ'իյնայ։ Չափակցութիւնք մտքէ ըլլալով՝ ճշդութեան երաշխաւոր չենք կրնար ըլլալ։

Փողոցէն նախ եւ յառաջ A սրահը կը մտնենք։ Փողոցի կողման օղակաձեւ գծերը մերձաւորապէս կը նշանակեն այն տեղերը, ուր փայտէ սիւնք (տես Ձեւ 1) կանգնուած են. պատի քովի փոքրիկ a գծերն այն տեղերն են՝ ուր ամառը բնակիչք կամ գետինն եւ կամ փայտեայ, շատ նախնական մահճակալաց վրայ կը քնանան եւ ժամանակ կ'անցընեն։ Սրահի մէջ կը հանգչին կենդանիք, իսկ կատաղիք յիշեալ սեանց կը կապուին։ F այն մասն է՝ որ սրահէն ցած պատով մը բաժնուած է եւ հաց պատրաստելու կը ծառայէ. հացը

---

1 Արան օտար բառ է, մինչդեռ սար (բարձունք, կատար՝ գլուխ լերանց, սարաւանդ) բնիկ հայերէն բառ է եւ ըստ Հիւբշմանի (Armenische Studien, Nr. 247) սանսկրիտ ciras (գլուխ, ծայր,) պերմ. saranh, նորպրս. sar, յունարէն κάρα, κόρση, լատիններէն cerebrum բառերուն հետ կապ ունի։

կ՚եփուի գետնի մէջ բացուած բոլորակաձեւ խոր ε ծակին մէջ՝ որ Թոնիր կ՚ըսուի։

Տան ճակատի գլխաւոր պատին երկու α եւ β մուտքերէն α տուն՝ B ղարադամը կը տանի, իսկ β՝ D ախոռը։ Տան α դռնէն մտնելով անմիջապէս տան ներսը չենք տեսներ, վասն զի սպիտակ բռեալ փայտէ կամ հիւսուածոյ դ պատն՝ որ գրեթէ մարդու բարձրութեամբ է, տեսնելը կ՚արգելու։ Այս պատը՝ զոր առ հասարակ գրեթէ ամէն տուն ունի, հաւանականագոյնս այն վախճանաւ շինուած է որ կամ ազատօրէն տան ներքսակողմն նայելն արգելու, եւ կամ դուռն անընդհատ բանալով եւ փակելով գոյացեալ օդոյ հոսանքէն՝ օճախի քովնստողները պատսպարէ։ Այս պատը ԴԸՐԲԱ նաեւ ԴԸՐԲԸԶ (Թերեւս ի պարսիկ լեզուէ) կը կոչուի։

Փոքրիկ բաժին մըն է δ որուն վարի մասը հաւնոց է, իսկ վերինը՝ այլեւայլ իրեր պահելու տեղ. b մեծաքանակ ալեր շտեմարանն է։ Շտեմարանս շինուած է կաւէ շատ նեղ պատով, ուղղանկեան ձեւ ունի եւ այնչափ բարձր է՝ որչափ է իր շարունակութիւնը կազմող տախտակ է միջնորմը։ Վրան բաց է եւ երբ կը լեցուի՝ տախտակներով կը ծածկուի։ Կողմնական՝ ձեռքի չափ մեծ բացուածքէ ալիւրը կ՚առնուի, զոր դարձեալ կը լնուն տախտակներն ի բաց առնլէն ետքը։

Ներս մտնելով տան կենդրոնը օճախի բոլորակաձեւ δ տեղը կը տեսնենք։ Օճախի տրամագիծը բաւական մեծ է, այնպէս որ բոլորտիքը 20—30 հոգի կրնայ բազմիլ. գետնի համեմատութեամբ քիչ մը խորունկ է. եզրները հողով ձեռքի հաստութեամբ ծեփուած են, որպէս զի մոխիրն, կայծն եւն շուրջը նստողներն անհանգիստ չընէ։ Օճախին մեծութեան համեմատ՝ վրան տանիքը մեծ ծակ մը բացուած կ՚ըլլայ, որ թէ ծխանի եւ թէ պատուհանի տեղ մը կը ծառայէ։ Ծակը եղեգնանման հիւսուածոյ կազմածով մը պատուած է, որուն վերի

մասը նեղ՝ վարը լայն գործուած է. ամբողջը շաղախով ծեփուած է։ Հիւսուածոյ այս կազմածն իբր երկու մատը բարձր ըլլալով՝ հեռուէն դիւրաւ կրնայ տեսնուիլ, եւ քանակութենէն գիւղին՝ ընտանեաց թիւը դիւրաւ իմացուիլ, վասն զի ուր որ ընտանիք մը կը բնակի, այս եղեգնանման կազմածն անպատճառ կը գտնուի՝ գոնեայ նախկին տանց մէջ, զոր Ռէրթէն, Էրթէն, Ռէրթ կ՚անուանեն. նորագոյն տներն պատուհան ունին՝ ըստ այսմ՝ ինչպէս ինքնին կ՚իմացուի, երդիկ չունին։ Օծախին նշանակութիւնն, կրակ վառելու ու. պահելու կերպն այնպէս հետաքրքրական են, որ չեմ կրնար յետոյ՝ տան ամէն մասունքներն աչքէ անցընելէն վերջը՝ այս նիւթիս չդառնալ։

Երկրորդ փոքրիկ ծ ծակը սովորաբար ոստայնանկի գործիքին կամ ճլկաւորի տեղն է, զոր ամէն տուն կ՚ունենայ, ըստ որում ամէն ընտանեաց մէջ կանայք իրենց եւ ընտանեաց անդամոց համար բրդեղէնները, մետաքսեղէններն ու բամբակեղէնները կը գործեն։ Իրենց գործածը թէեւ գործատանց գործածներուն պէս նուրբ չէ, սակայն նշանաւոր է դիմացկութեամբն ու հաստատութեամբ։ Այս տեղն անոր համար ճլկաւոր (= Webgrube) կ՚ըսուի, վասն զի գետինը խորունկցուած է, եւ կինը գործած ժամանակ գետին նստելով՝ ոտքերը վար կ՚երկնցընէ՝ անոնցմով ալ գործել կատարելու համար։

Այս տեղւոյս վրան՝ երդիկն երկրորդ ծակ մ՚եւս բացուած է, որ իբր պատուհան եւեթ կը ծառայէ եւ փոքր է՝ նախ որպէս զի յարկը պտըտող մը մէջը չիյնայ, եւ երկրորդ՝ աշխատող կինն անձրեւէ չնեղուի։ Առաջնոյն պէս կողովանման ցանգ չունի։ Ննջելու երթալէն յառաջ երկու ծակերն ալ կը գոցեն, առաջինը՝ ծառի լայն կեղեւով մը որովհետեւ լայն տախտակ կտրել չեն գիտեր. այլոցով լայն տախտակ կտրելու արուեստը նորագոյն

ատեններս տակաւ տակաւ կը տարածուի, իսկ նախկին ժամանակներն լայն գերանները սեպերով կը ճեղքէին եւ այս ոճով յառաջ եկած կտորներն՝ գործիքներով ողորկելով տախտակ շինէին, կամ նախադաս կը համարէին փոխանակ այս տաժանելի աշխատութեան՝ գարնան՝ երբ ծառերն դիւրաւ կը կեղեւին, վայրի կեռասենւոյ եւ կեղեւը դիւրաւ ելլող ուրիշ ծառոց կեղեւը հանել եւ իբր տախտակ գործածել։ Այս կեղեւներն կէղէ կ'անուանեն. ասոնք շատ լայն են ու թեթեւ։ Երկրորդ ծակը կը փակեն կտոր մը ծանր փայտով։

Վերջապէս տան մի միակ ազատ մնացած եւ ամենէն մթին C անկիւնը կամ պէսպէս պաշարք կը պահուին, — որովհետեւ փոքրիկ ու խաւարին C խուցը՝ ուր γ դռնէն կը մտցուի, չի բաւեր, — կամ մանկամարդ կանայք եւ աղջկունք օտար հիւր ներկայ եղած ժամանակ այդտեղ կը կը կենան։

Ըսելու շատ բան չունիմ D ախոռին վրայ։ Ախոռը նախնաբար տան մի մասը կը կազմէր, մինչեւ որ վերջապէս միջնորմով մը բաժնուեցաւ։ Ախոռն ուր որ ալ շինուած ըլլայ, ձեւը միշտ երկայն է։ Կիտաձեւ գծերն անասնոց մսուրն է. β մուտքն է սրահէն։

Ուրիշ տներու վրայ խօսելու չսկսած՝ կ'ուզեմ շէնք շինելու կերպին ու տաղձին վրայ քանի մը տեղեկութիւն տալ։ Ամեն ուրեք գիւղացին ինք կը շինէ իւր տունն աջակցութեամբ իւր ընտանեաց անդամոց։ Կանայք ու աղջկունք ջուրն ու կաւն իրենց կռնակն առած կը բերեն. որդիք բեռնակիր կենդանիներով քար կը կրեն, իսկ հայրը պատերը կը շինէ։ Ինչպէս ծրագրին վրայ կը տեսնենք, տան յատակագիծը շատ պարզ է. քառակուսւոյ մօտ միջոց մը երկու անհաւասար՝ յառաջակողման նեղ, յետսակողման լայն մասանց՝ բաժնուած է։ Հիմ դնելու համար երկրին կարծր կամ կակուղ ըլլալուն նայելով՝ նուազ կամ առաւել խորունկ կը փորեն։ Պա-

տերուն տեսքն բաւական խորտուբորտ է, որովհետեւ քարերն առանց տաշուելու՝ ինչպէս որ դաշտէն կամ գետէն բերուած են, իրարու վրայ կը դրուին, եւ եթէ քարերու ողորկ երեսներն դուրս ալ դարձուին՝ գեղեցկութիւն մը յառաջ չեն բերեր։ Շէնքի գործածուած հողը նախ յարդով լաւ կը խառնուի, որպէս զի աւելի բռնէ. այս եղանակն ամէն դրացի ժողովրդոց՝ Թաթարաց, Վրաց, Ռուսաց, Պարսից եւն ծանօթ է կ'ըսուի։ Այսպէս Պոլակ (Persien, էջ 53) Պարսիկ տանց ատաղձին համար կ'ըսէ. “Հիման ու կամարաց՝ շատ քիչ անգամ կրախառն շաղախ կը գործածեն. առ հասարակ տղմախառն դաճ կամ յարդախառն շաղախ կը գործածուի, վերջինն՝ միայն տանց արտաքինն ծեփելու։„ Մեր գիւղացիք կիր կը գործածեն — առանց ի նկատ առնլու նորագոյն շէնքերը — միայն եկեղեցւոյ շէնքին։

Մեր գիւղացի ճարտարապետը շէնքն ի գլուխ հանելու համար երեք գործիք կը գործածէ. մուրճ մը՝ քարերը կոտրելու երբ չյարմարին, մալա (ծեփիչ) անուանեալ գործիքը՝ շաղախն առնլու, եւ երրորդ՝ ուղղիչ (regulator) մը՝ որով որմերն ուղղահայեաց կ'ըլլան։ Սակայն այս գործիքն դոյզն անգամ կը գործածուի, ինչպէս որ գիւղական տանց խորտուբորտ պատերը կը ցուցընեն։

Առաջակողման պատին բարձրութիւնն դրսէն թերեւս 2 մեդր ըլլայ. տան ներսի կողմը քիչ մը խոր է։ Ինչպէս վերն ըսինք, տան կռնակի կամ յետսակողման որմը չ'երեւիր եւ կամ փոքրիկ մաս մը. կողմնական որմերն ալ մասամբ միայն կ'երեւան։

Ամբողջ տան վրան հարթաձեւ մեծ յարկն է, որ միջավայրը՝ ծխանին մօտ աննշանակ ծռութիւն մ'ունի. ամենեւին անհարթ տեղ մը պիտի չըլլայ, ապա թէ ոչ անձրեւներէ ու ձիւնէ գոյացեալ ջուրը հաւաքուելով տունը կը մտնէ եւ գերանները կը փտեցընէ։

Ցարկը հետեւեալ կերպով շինուած է, տան ներքնակողմը օճախին մօտ ըստ կարի հաստ եւ ամուր սիւն[1] մը կը կանգնուի։ Պատերէն եղքն այս սիւնն է յարկին՝ ըստ հետեւորդի նաեւ տան՝ գլխաւոր մոյթը. այս պատճառաւ այլաբանական մտքով տան կարեւորագոյն անդամներէն միոյն համար կ'ըսուի "նա է տանը սիւնը." կամ չարամաղթելով՝ "տանդ սիւնը կոտրուի", ընդհակառակն օրհնելով կ'ըսուի "տանդ սիւնը հաստատ կենայ." եւն։

Երկայն գերան մը՝ որուն մէջտեղը սեան վրայ կը հանգչի եւ երկու ծայրերը հանդիպակաց պատերն իրարու հետ կը կապէ, սա պաշտօնն ունի որ իւր վրան կ'ամփոփէ երկու կողմանէ խաչաձեւ դրուած երկրորդական գերաններու ծայրերը։ Կարգաւորեալ տախտակ չգտնուելուն՝ երկրորդական գերաններու վրայ իբր բազկի հաստութեամբ երկու ճեղքուած փայտի կտորներ քովէ քով խիտ կը տարածեն. ասոնք՝ որ փոչփոտ կ'ըսուին, յարկէն հողի մեծ զանգուածներուն վար թափիլն կ'արգելուն։ Վերջապէս ասոնց վրայ ալ բազմութեամբ խռիւ ու յարդ կը տարածուի եւ հող կը դրուի։ Հող դնելու ժամանակ մեծապէս զգոյշ կ'ըլլան, որպէս զի չըլլայ որ մէկ կողմանէ շատ դնելով՝ ծանրութիւնն մոյթին վնաս հասցընէ, իսկ միւս կողմանէ սակաւ դնելով՝ ջուրն թափանցէ անցնի։ Չկայ աւելի անհաճոյ բան մը քան եթէ բնակիլ

---

[1] Հիւբշման (Armenische Studien I, էջ 251) Հայերէն «սիւն»ը յոյն κἴωνի հետ կը համեմատէ՝ Հայերէն «սիւն»ը հայկական sīvanէ կամ sēvanէ ածանցելով եւ յոյն κἴωնն κιϝων ձեւին վերածելով. իսկ ընդհակառակն այլք աւելի յառաջ յունական κἴων բառը փոխառեալ բառ համարած են։ A. Wissen (Pompeianische Studien zur Städtekunde des Alterthums, Leipzig, 1877, էջ 618) կ'ըսէ. "Փիւնիկերէնէ փոխառեալ բառ մըն է κιων, եւ աչուղները պատմական իրողութեանց դէմ փակել է՝ յունական սեանց արեւելքէ փոխառեալ ըլլալուն դէմ հակառակիլը։", Հայերէն բառն արդեօք Վիսսէնի կարծեաց դէ՞մ կը խօսի թէ փիւնիկերէնէ փոխառեալ է։

յարկի մը տակ որ կը կաթկթէ. մարդ երբեք ապահով չի կրնար ըլլալ, թէ արդեօք քանի մը աղտեղի կաթիլք կերակրոց մէջ չէ՞ն կաթկթեր կամ զգեստներուն մրախառն դեղին գունով չէ՞ն արատաւորեր։ Այս պատճառաւ հարկ է յարկերն անընդհատ անձրեւէ յառաջ եւ ետքն մաքուր մ'աւլել եւ լողքարով անձրեւներէ խոնաւցած ու արեգական կիզիչ ճառագայթից ազդեցութեամբն խորխոլած հողը հաստատեն։ Եւ որովհետեւ տանիքներն սովորաբար իբրեւ ճամբայ ալ կը գործածուին, ուստի եւ անձրեւէ յառաջ ծանծի թեթեւ խաւով մը կը ծածկուին, որպէս զի երթալով գալով հողը չբաժնուի։

Յարկն ոչ թէ միայն իւր յատուկ պաշտօնը կը կատարէ, այլ միանգամայն տարւոյ լաւ եղանակներուն գիւղացւոյ գիշերը քնանալու, ցերեկն իրենց սովորական ժողովքներն գումարելու, խորհրդակցութիւնները կատարելու տեղն է։ Գիւղին ամէնէն երէցներն՝ պատկառելի, ծանր կերպարանքով կը նստին՝ իրենց թիկունքը ծխանին կռթընցուցած, իսկ երիտասարդք լի մեծարանօք անոնց առջեւն կեցած՝ ստիպուած են անոնց խօսքերը լսել։ Այդ խորհրդակցութեանց ներկայ ըլլալէ աւելի հետաքրքրական բան չի կրնար ըլլալ. գոգցես թէ բուն հասարակապետութիւնն է իւր երիցագոյններովն եւ ծանօթ ճառախօսներովն։

Դուռներն[1] գրեթէ միայն փայտէ են. նոյն իսկ վերն նշանակեալ կերպով պատրաստուած տախտակներն անգամ փոխանակ երկաթէ գամերով

[1] Դուռ՝ գաւառական դուռ, ինչպէս յայտնի է՝ հին հնդեւրոպական բառ մըն է, ըստ որում յունարէն θύρα, լատ. fores, գոթ. daur, daúrōns սլ. dviri, նոր պարս. dar, սանսկր. dvar եւն բառերու հետ կապ ունի։ Հիւբշմանի կարծեաց համեմատ (անդ. Nr. 58) արմատը հայերէնի մէջ ռն մասնիկն վրան առած է. սկզբնական արմատը դուր+ յոգնակիի եւ բարդութեանց մէջ, զ. օ. դրոց, յերեւան կ'ելլէ։

*խրարու. Հետ միացուելու՝ փայտէ գամերով կը միացուին: Դրանց բարձրութիւնը շատ աննշանակ է, այնպէս որ եւ ոչ իսկ միջահասակ անձ մը կրնայ կանգուն տուն մտնել առանց գլուխը զօրաւոր մը զարնելու:*[1] *Դռները հաստատելու կերպը Պարսից եւ միւս դրացի ազգաց գործածած կերպն է, այս ինքն՝ դռները քովի գերաններէն չեն կախեր, այլ վերէն ու վարէն սեւպերու վրայ կը հաստատեն. մինչդեռ Պարսկական դրանց առջեւն իբր մէկ ոտք բարձր սեմք կ'ըլլայ, Հայոց դռներուն սեամքն որահի գետնին Հետ հաւասար է եւ սատիճանը տան մէջն է:*[2] *Արդէն իսկ համեմատութիւնը բաւական կը ցուցընէ որ Հայերն ի Պարսից բան փոխ առած չեն, վասն զի փականքն ալ Հայոց քով բոլորովին տարբեր է. այլ տարբերութիւններն յետոյ յառաջ պիտի բերենք: Դուռը փակելու գործիքն է պարզ փայտեայ կղպակ մը՝ որ դրան ճիշդ մէջտեղը կը հաստատուի փայտէ գամերով: Ձեւ 6ը այսպիսի կղպակի մը կազմութիւնը մեր առջեւը կը դնէ: Ամէնէն կարեւոր մասն է a, զոր մայր (= մայր) կարծեմ կ'անուանեն. (այս բառին վրայ ապահով չեմ.) խոռոչացեալ տեղերը կու գան բուն կղպակը b (= ֆոֆէֆ՝ գաւառական ֆլլան, ֆոկ,) բռնոյլին c' (գւռ. պընէլը, պէնէլը, պէլանէ, պնէլը,) եւ d պորզողոնոկը = ֆոնոն. (քոթոթ ըստ ինքեան*

---

[1] *Հին գերմանական դռներն ասոնց հետ կը համեմատին, որոնք* Vita St. Severini, Cap. VII *մէկ տեղւոյն կամաձայն այսպէս ցած էին: Կ'ըսուի այնտեղ. Երանելին այնպիսի ցած խղիկի մը մէջ կը բնակէր, որ Նրբաւարտ Աղոակեր կը ծռէր՝ գլուխը ձեղունը չզարնելու համար. (*Henning, *անդ.):*

[2] *Համեմատելու համար՝ Դր. Պոլակի Պարսից դռներուն վրայ ըսածն կ'ուզեմ այստեղ յառաջ բերել. "Դռները՝ արաբացի պեղեցիկ քանդակներով, թռչուններով եւ ուրիշ կենդանիներով նկարեալ երկու փեղկէ (մեր քովի դուռը միափեղկ է) կը բաղկանայ. առ նուազն մէկ ոտք բարձր սեամք ունին եւ այնպէս ցած են որ այս տեսակ բաներու չվարժած եւրոպացի մը կամ ոտքը կամ գլուխը տեղ մը կը զարնէ: Ծխնիներու վրայ հաստատուած չեն, ալ սեպոց եւ ոչ թէ դռնափակով կը գոցուին, այլ շղթայով վերէն լայնութեանը դրուած գերանին կը կապուին:"*

